1916 № 16.—Ապրիլի 10 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասարդեան հ. սպար. № 7. **Հեռախօս № 29.**

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամը 10—2 բացի կիրակի և տօն օրերից։ Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։ Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են մէկ ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։ Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։




ԹԻՒՐՔԱՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ԵՐԹԸ ԴԻԼԻՋԱՆԻՑ ԳԱՆՁԱԿԻ ՆԱՀԱՆԳԻ ԳԻՒՂԵՐԸ

**Համբաւաբերի հետեւեալ համարը զատկական տօների պատճառով լոյս կը տեսնի Կանաչ կիրակի, այն է ապրիլի 24-ին:**

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՀԱՅՈՑ ԶԱՏԻԿ

*Քաղցր և անուշ է Զատիկն Հայոց։*
*Նաղաշ Յովնաթան*

### I

Գարուն... Շարժում, ոյժ, կրակ։ Ամեն ինչ, որ կարող է ապրել, իր աւերակներն է վերաշինում։ Ամեն մեռելութիւն անդիմադրելի թափով իր գերեզմանն է պատռում, առաջ սլանում, դէպի արե՛։ Առոյգ մանկութիւն... Նա բողբոջներով ու ժամերով է հասակ քաշում, մեծանում ջղուտ աշխատանքի համար։ Մի շեշտ ամեն տեղ—երջանկութիւն։ Մի հեք միայն—կեանք։

Մարդը, խոնարհ ու խոհուն սքանչացող համասփիւռ ծնելութիւն ծաւալող յաւիտենական խորհրդի առջև, դարձրել է նրան աստուածութիւն, դարձրել է նրան տօն—Զատիկը։

Իւրաքանչիւր ժողովուրդ, հարազատ իր հոգուն ու սրտին, գերազանցօրէն ինքնուրոյն է և իր տօների մէջ։ Հայոց Զատիկը ճիշտ որ հայոցն է միայն։

Դեռ քրիստոնէութիւն չը կար աշխարհում, բայց հայը իւրաքանչիւր գարնան տօնում էր տանջուած, մեռած և յարութիւն առած աստուածուն։ Դա Միհրն էր, բնութեան ստեղծագործող սկզբունքի, անվերջ կրկնուող գարունների խորհրդանշանը։

Այնքան վաղ ժամանակներից է որ հայը պաշտում է յաւիտենական, անմեռ մի շարք ճշմարտութիւններ, որոնք մահն ու կեանքը լծորդում են իրար հետ՝ իբրև աշխարհը իրանց մէջ պարունակող անհրաժեշտութիւններ։ Մահը նրա համար է, որ նրանով մահը ոչնչացուի։ Մահը յաղթանակի մահ է։ Մահով կեանք—ուրիշ կեանք չը կայ։

Եւ գուցէ ոչ մի ազգ աշխարհի վրայ այնքան շատ չէ օրինակով կրկնել այս ճշմարտութիւնները, ինչպէս հայ ազգը։ Գուցէ «մահուամբ զմահ կոխեաց»-ը ոչ մի տեղ այնքան բարձրագահ խիկութիւն չէ եղել դարերի ընթացքում, ինչպէս հայ երկրի մէջ։

Գարուն էր բացւում ամեն տարի, և քիչ էին այն գարունները, երբ հայոց լեռներն ու հովիտները չէին լցւում օտար արշաւանքներով։ Քանի քանի անգամ է հայոց Զատիկը արիւնով ներկուել։ Բայց միշտ էլ գտնուել է հայ, որ լերան լանջից տեսել է օտար աստղերի տակ քշուող բիւրերին, տեսել է իր աստղերի տակ նեխուող բիւրերին, հայրենի աւերակների բիւրաւոր ծուխերը, բայց էլի երգել է՝

*Աւետեաց օր է Զատիկն Հայոց...*

Այո, այսպէս։ Ուրիշ տեսակ հայ չէ եղել դարերի երկար շարքերի մէջ։ Չը լինէր նրա այս դարմանք-երգը, չէր լինի և նրա պատմութիւնը։

Հիմա։ Արդեօք շատ են եղել հայ աշխարհի մէջ այսօրուանին նմանուող Հայոց Զատիկներ։ Կասկածելի է։ Ա՞յնքան անվերջ սպանդանոցը։ Ա՞յնքան անապատ հայոց գիւղերն ու արտերը։ Ոչ, գերման-թիւրք խժդժութիւններից սարսեց ու սարսռեց Մայր Հայաստանը, նա որ անթիւ դարեր անթիւ բորենիներ է տեսել իր կրծքի վրայ... Օ՛, ո՜վ է հայի չափ տանջուած ու հալածուած այս վայրկեաններին։ Արնաքամ դիակ, աչքերը փակած, առանց շնչի, ճանապարհի կողքին ընկած։

Եւ ո՞ւր է, կը լինի՞ այնքան մարդկային արտասուք, որ կարողանայ ծածկել հայ մանուկների, հայ կոյսերի, հայ հարսների անհելի մորմոքը...

Բայց և Հայոց Զատիկ է...

Եւ այսօր էլ նա չէ դաւաճանում իրան... Սուր ցաւը կոկորդն է խեղդում, սալ սալ արիւն պիտի ժայթքէր խորտակուած սրտից. բայց ոչ, այդ արեան ճանապարհով նորից հինն է, հին ուխտը, հին փրկութիւնը, որ հնչում է մեր արիւնոտ անապատում՝

*Աւետեաց օր է Զատիկն Հայոց...*

Այսպէս է...

### II

Հեռու տեղերից, բարձր ամբիոններից գալիս է ձայներ, գալիս են հայութիւնը կանչելու...

Ահա ռուսաց մեծ ատեանում Միլիւկովն են, ռուս երկրի պարծանքներից մէկը, ազատութիւն է պահանջում դարերի նահատակի համար։ Եւ նրան ձայնակցում են, նրան ողջունում են ռուս մեծ ժողովրդի շատ ներկայացուցիչներ։

Իսկ Պարիզը՝ համայն աշխարհի մայրաքաղաքը համայն մարդկութեան համար ազատութիւն է կռել։ Եւ սիրում է նա թիւրքահայերին, որովհետեւ ազատ չեն նրանք եւ ազատութիւն են տենչում։ Սորբոնի վեհ կամարների տակ հոյակապ համակրական ցոյց է ձօնւում հայերին։

Հաւաքուել է մեծ հանդէս, ներկայ են Ֆրանսիայի լաւագոյն զաւակներից շատերը։ Նախագահում է Պոլ Դեշանէլը — պատգամաւորների ժողովի նախագահը։ Բարձր ոգեւորութեամբ լցուած մի ճառ է նա արտասանում եւ նշաւակում է Գերմանիան, որ օգնել է դահիճ թիւրքերին բնաջինջ անելու հայերին։ Նոյնն է հաստատում լուսաւորութեան մինիստրը իր համակրական ճառի մէջ։

Եւ երկու հեղինակաւոր բերաններով նոր նոր մի էջ է մտցւում Հայոց պատմութեան մէջ։ Մինչեւ այժմ յայտնին այն էր, որ հայերին կոտորողները թաթար ու թիւրք վայրի ցեղերն էին, այժմ նոյն արիւնոտ հանդէսի մէջ Զինգիզների, Լանկթամուրների փոխմակին միանում է խաչով պսակուած երկիրը. նա, որ Լիւթերով ու Գէօթէով էր պարծենում, որ իրան զտուած քրիստոնեայ է համարում։ Այսուհետեւ աւետարանական Վիլհելմը նոյնացած կը լինի հայ ցեղի պատուհասների, Արփասլանների ու Չարմաղանների հետ եւ անէծքը, խողխողուած մի ժողովրդի յաւիտենական անէծքը կը ծածկէ նրա յիշատակը, անմեղ երեխաների, համեստ կոյսերի ու հարսների հազար-հազար կրակուած մարմինների մոխրով։

Կրուպպի թնդանօթներով է պարծենում Վիլհելմը։ Բայց հայն էլ իր Զատիկն ունի։ Սորբոնի մեծ ժողովում վեր է կենում Անատոլ Ֆրանսը, Ֆրանսիայի գրական կոթողը եւ ասում է.

— Քոյր իմ, վե՛ր կաց — այսպէս կասեն Հայաստանին յաղթութիւն տարած դաշնակիցները. — Նահատակ, այլ եւս մի՛ տանջուիր։ Դու այս օրից ազատ ես ապրելու, ինչպէս քեզ ցոյց են տալիս քո հանճարը, քո հաւատը։

Այս աւետիսն է որ տարաւ Հայոց Զատիկը պըտտեցնելու Հայոց երկրում, սարից սար, ձորից ձոր, նրանով շոյելու այն հողերը, որոնք այրուած, տոչորուած են հայի արիւնից։ Եւ հազարաւոր շշուկներ հազար ու հազար գերեզմաններից գնում են փարելու այդ մեծ աւետիսին.

«Օրհնեա՜լ է ազատութիւնը…
Մենք նրա ուխտաւորներն ենք»։

III

Հիդրայի մի գլուխն էլ ընկաւ։ Մեր քաջարի զօրքերը Տրապիզոնն էլ խլեցին թիւրքերի ձեռքից։ Եւ նորից Հայոց Զատիկն է որ տանում է այս մխիթարութիւնը տարածելու հայոց տոչորուած սրտերում։

Մէկն էլ, մի հարուած էլ, մահացու, անբուժելի, օրհասական։ Փշուր փշուր է դառնում օսմանեան փտած բռնակալութիւնը։ Հինգ հարիւր տարի է, նա, Գլադստոնի ասածին պէս, անէծք է՝ ծանրացած մարդկութեան խղճի վրայ։ Այժմ թող հեռանայ այդ անէծքը եւ Սեւ ծովի գեղածիծաղ ափերից։

Հայաստանի սահմաններից դուրս է Տրապիզոնը, բայց նրա նուաճումը ապահովում է Հայաստանի նուաճումը։ Այսուհետեւ կարելի է վստահ լինել, որ հայկական հողից ընդ միշտ հեռացաւ օսմանեան անիծապարտ մղձաւանջը։

Այս է աւետում Հայոց Զատիկը…

Տրապիզոն… Նոյնպէս մի հայկական սպանդանոց։ Իտալական հիւպատոսը անցեալ տարի էր զարհուրանքով պատմում թէ ինչպէս ջնջեցին 10 հազար անմեղ հայերի։ Եւ հիմա Հայոց Զատիկն է որ շշնջում է սուրբ գիշերուայ լռիկ ամայութեան մէջ. «Հանգիստ քնեցէք, ով նահատակներ… Եկաւ վրէժը, բորենիները ոռնալով փախան… Ձեր արիւնն էր որ խեղդեց նրանց»։

Գարնան հովերի թեւով վաղուայ կեանքն է ժպիտներ ուղարկում։

Շնորհաւոր Զատիկ, հա՛յ մարդ։

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասի ճակատի վրայ այս շաբաթ պատերազմական գործողութիւնները խոշոր չափերով էին առաջ տարւում եւ շատ շօշափելի արդիւնքներ տուին։ Թշնամու հետապնդումը յիշեցնում էր Էրզրումի գրաւման առաջին օրերը, երբ թիւրքերն ամեն գծից նահանջում, իսկ ռուսները նրանց կրնկակոխ հալածում էին։

Հարաւային գծի վրայ բաւական զօրեղ կռիւներ տեղի ունեցան Բիթլիսի եւ Մուշի շրջաններում։ Ռուս զօրքի ձախ թեւի վրայ ճնշում գործելու եւ մինչեւ իսկ այստեղից նրա թիկունքն անցնելու համար թիւրքերը բաւական խոշոր ոյժեր էին կենտրոնացրել Բիթլիսի գծի վրայ Դիարբեքիր-Համիդի շրջանից։ Այս թարմ զօրքերը 12—15 վերստի վրայ վեց օր շարունակ յարձակումներ էին գործում ռուսների վրայ՝ ըստ երեւոյթին մի շատ խոշոր ռազմական ծրագիր իրագործելու համար։ Միաժամանակ քրդական բազմաթիւ հեծեալների օգնութեամբ նրանք աշխատում էին անհանգստացնել ռուսներին Մուշի շրջանում։ Այս կռիւները վերջացան ամսոյս 1-ին նրանով, որ թիւրքական մի դիւիզիա սոսկալի ջարդ կրեց եւ 13 սպայ ու 350 ասկեար գերի տալուց յետոյ յետ նահանջեց։ Այսպիսով Դիարբեքիր-Համիդի ճանապարհը բաւական մաքրուեց թշնամուց. Այս անյաջողութիւնից յետոյ թիւրքերի դրութիւնը հարաւային թեւի վրայ պէտք է անյուսալի համարել։

Կենտրոնի գծի վրայ Բաբերդն էր կազմում այս շաբթուայ կռիւների առանցքը։ Թիւրքերը Ճորոխի վերին հովտում օրհասական ճիգեր էին գործ դնում սեղմելու ռուսների առաջխաղացութիւնը, բայց անյաջող։ Ռուսնե-

ը թէև դանդաղ՝ դիմում են դէպի Բաբերդ։ Նրանց դանդաղութիւնը պէտք է բացատրել երեք հանգամանքով. նախ՝ որ կռուի դաշտը — մօտ 6500 ոտնաչափ մի բարձրաւանդակ — կտրտուած է լեռներով, որ թշնամին բաւական ամրացրել է. երկրորդ՝ որ այստեղ Պոլսից եկած զօրքերը բաւական զօրեղ դիմադրութիւն են ցոյց տալիս, կառչելով ամեն մի ամրութիւնից և երրորդ՝ որ հիւսիսային գծի հասունացած գործողութիւնները գերազանցօրէն գրաւում էին ռուսների ուշադրութիւնը։

Ամենախոշոր կռիւներն այս շաբաթ տեղի ունէին հիւսիսային գծի վրայ կամ ծովամերձ շրջանում։ Քանի ռուսները մօտենում էին Տրապիզոնին, այնքան ուժեղանում էր թիւրքերի դիմադրութիւնը, մանաւանդ որ այստեղ գործում էին Պոլսից եկած բաւական լաւ պատրաստուած և հանգստացած զօրքերը։ Ռազմավայրի բնական ամրութիւնները — Պոնտական շղթայի սարերը, ձորերն ու կիրճերը առանց արհեստական կառուցուածքների էլ թև ու թիկունք էին հանդիսանում թիւրքերին։ Սակայն, չը նայած այս բոլորին՝ ռուսներն անընդհատ յետ էին մղում թիւրքերին իրենց դիրքերից՝ Սև ծովի նաւատորմիղի խիստ արժէքաւոր աջակցութեամբ։ Վերջինս ոչ միայն ռմբակոծում էր թիւրքերի դիրքերը, այլ և հնարաւորութիւն էր տալիս գետանցներով թիւրքերի ձախ թևին ու թիկունքին սպառնալ և նրանց ստիպել շարունակ յետ ընկրկելու։ Ամսոյս 3-ին սաստիկ կռիւ է տեղի ունենում Սև ծովը թափուող Կարա Դերէ գետի ափին։ Ռուսները ծովային թնդանօթների օգնութեամբ դուրս են մղում թշնամուն գետի ձախ ափի դիրքերից և նրանց հալածելով գրաւում Սիւրմէնէ նաւահանգիստը և Արսէն Կարոսի գիւղը, որ Տրապիզոնից 18 վերստ հեռու է։ Առանց դադար առնելու և դադար տալու թշնամուն՝ ռուսները շարունակում են արշաւանքը դէպի Տրապիզոն, որև գրաւում են ամսոյս 5-ի կէսօրին։ Կարա-Դերէի կռւից յետոյ Տրապիզոնի բաղդն արդէն վճռուած էր և եթէ թիւրքերը մինչև Դրոն գիւղը, որ Տրապիզոնից 10 վերստ արևելք է գտնւում, դարձեալ մի քանի տեղ դիմադրութիւն են ցոյց տալիս՝ պէտք է բացատրել միայն քաղաքը դատարկելու նպատակով։ Սակայն այդ նպատակը, ինչպէս երևում է, միայն մասնաւոր չափով է իրագործուել։ Թիւրքերը թողել են Տրապիզոնում բաւական քանակութեամբ ռազմամթերք և պարենաւորման տապկաններ։ Եթէ նրանք այս կարգի իրերն էլ չեն կարողացել դուրս տանել կամ գոնէ փչացնել, նշանակում է Տրապիզոնի դատարկումը անկարգ փախուստի պայմաններում է տեղի ունեցել։

Միջագետքի ճակատում ջրերն արդէն սկսել են պարփակուել գետերի հուներում, գետինը սկսել է չորանալ և դրա հետ միասին կռիւները կենդանացել են։ Անցեալ շաբաթ անգլիացիք յարձակուեցին թիւրքերի դիրքերի վրայ և գրաւեցին նրանց խրամատների մի մասը. սակայն բաւական զգալի կորուստներ կրելով նահանջեցին։ Թիւրքերի ասելով անգլիացիք միայն կռուի մի գծի վրայ թողել են 3000-ի չափ դիակ։ Թէև այս լուրը հերքեցին, բայց և այնպէս երևում է, որ նրանք զգալի կորուստներ են ունեցել։ Այնու հանդերձ անգլիացիք շարունակում են առաջ գնալ Տիգրիսի աջ ափով։ Մարտի 30-ին և ապրիլի 2-ին նրանք կռւով յետ են մղել թիւրքերին իրենց դիրքերից և գերիներ ու թնդանօթներ առնելով գրաւել են նրանց առաջաւոր դիրքերը։

## ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Այս շաբաթ ցամաքային գործողութիւններ համարեա թէ չեն եղել։ Միայն Դոյրան-Գևգելի գծի վրայ տեղի ունէր երբեմն խիստ, սակայն ընդհանրապէս միջակ թընդանօթամարտ։ Միաժամանակ դաշնակիցները սաւառնակային արշաւանքներ էին կատարում թշնամու դէմ։ Նրանք օդից ռմբակոծել են Ադրիանուպոլսի և Ստրումիցայի կայարանները, զգալի վնասներ պատճառելով նրանց։ Դաշնակիցները սաւառնակային ռմբակոծութեան են ենթարկել վերջին օրերս նաև Պոլիսը, առաջացնելով բազմաթիւ հրդեհներ և սարսափի մատնելով ազգաբնակութեանը։

## ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում ջրերը քաշւում են և դրան զուգահեռական գործողութիւնները զարգանում։ Վերջին շաբաթս բացի սովորական թնդանօթամարտից, որ տեղի ունէր գրեթէ ամբողջ ռազմաճակատի վրայ, իսկ առանձնապէս ուժեղ էր Եակոբշտադտի և Իլլուկստի շրջաններում, եղան մի քանի կռիւներ հետևակի մասնակցութեամբ Սարնիպայի ակունքի մօտ և Գալիցիայում։ Կռիւներն ընդհանրապէս յաջող էին անցնում ռուսների համար։ Բաւական խոշոր յաղթութիւն են ունենում ռուսները և Դուինի գծի վրայ, Գորբինակ գիւղի մօտ։ Նրանք մի յարձակմամբ խորտակում են լարացանցի չորս շարք և գրաւում գիւղի մօտի բարձրունքները։ Թշնամու բոլոր յակայարձակումները այդ բարձրունքների դէմ անյաջող են անցնում։

Ֆրանսական ճակատում այսօր լրանում է Վերդէնի ճակատամարտի երկամսեակը և դեռ այդ բերդը իր գըլխաւոր ամրութիւններով անդրդուելի կանգնած է։ Այս շաբթուայ կռիւները կենտրոնացած էին Լէ-Մորտոմ գծի վրայ, ուր գերմանացիք աներևակայելի ճիգեր են թափում «304» բարձունքը գրաւելու համար և Դուամոնի գծի վրայ, ուր ֆրանսացիք մի ուժեղ յարձակմամբ գրաւել են թշնամու առաջաւոր դիրքերի մի մասը և գերել 200 մարդ։ Մնացած գծերից աչքի էին ընկնում Վոժը և Արգոնները ուժեղ թնդանօթամարտով։

Իտալական ճակատում կռիւները շարունակւում են բաւական ուժեղ ձևով. սակայն դրանք մանր խմբակների ընդհարումներ են ներկայացնում, որոնց ընթացքում կողմերի զոհերը մի քանի տասնեակից չեն անցնում։ Ալպեան լեռների կտրտուածքներն անհնարին են դարձնում խոշոր ուժերի զօրաշարժը։ Սակայն այս մանր ձևով էլ իտալացիք այնքան են զբաղեցնում աւստրիացիներին, որ նրանք Գալիցիայում հազիւ թէ կարողանան մեծ ուժեր կենտրոնացնել վճռական գործողութիւնների համար։

---

# Ներքին տեսութիւն

## ԳԵՆԵՐԱԼ ԵԱՆՈՒՇԿԵՒԻՉԻ ՀԵՐՔՈՒՄԸ

«Համբաւաբեր»-ի անցեալ համարում տպագրեցինք Պետական Դումայի անդամ պ. Միքայէլ Պապաջանեանի ճառը հայերի մասին։ Կովկասեան Փոխարքայի զինուորական մասի օգնական գեներալ Եանուշկեւիչը «Нов. Вр.» լրագրի մէջ պատասխանել է Պապաջանեանին հետեւեալ գրութեամբ.

«Պարոն Պապաջանեանը Պետական Դումայում սոյն մարտի 14-ին արտասանած իր ճառի մէջ երկու անգամ յիշեց իմ անունը, կապելով այն՝ ընդհանրապէս հայ բնակչութեան և մասնաւորապէս Էրզրումի հայ բնակիչների գոյքերի վերաբերմամբ զինուորական իշխանութիւնների ցոյց տուած, իր տեսակէտից, անկանոն գործողութիւնների հետ։

Ընդ սմին նա ցաւ յայտնեց, որ արտաքին գործերի մինիստրութիւնը ժամանակին հարկաւոր ցուցումներ չի տուել ինձ։ Այնուհետև նա ասաց, որ եթէ ես այդ ցուցումները ստանայի, հարկաւ, կը հասկանայի, որ իմ կարգադրութիւնները սխալ են։

Ես սովոր եմ միշտ և պատրաստ բացատրութիւններ տալու կամ պատասխանելու իմ իսկական կարգադրութիւնների համար և հնարաւոր չեմ համարում ներկայումս առանց հերքման թողնելու պարոն Պապաջանեանի իր յիշեալ ճառի մէջ չը հիմնաւորած խօսքերը, որոնք կարող են հասարակութեանը և Պետական Դումայի պարոն անդամներին խնդրին անկանոն լուսաբանութիւն տալ։

Իմ պաշտօնով ես զինուորական օգնականն եմ միայն Նորին Կայսերական Մեծութեան Կովկասի Փոխարքայի, և ոչ գլխաւոր հրամանատարի։ Փոխարքայի իշխանութիւնը տարածւում է Կովկասի վարչական հողի, իսկ գլխաւոր հրամանատարի իշխանութիւնը ամբողջ ռազմաբեմի վրայ։

Իբրև օգնական, ոչ մի անկախ սկզբունքային կարգադրութիւն ես չեմ կարող անել, առանց այդ մասին առանձին հրաման ստանալու։

Պարոն Պապաջանեանի յիշած դէպքերը, եթէ տեղի ունեցած էլ լինին, կատարուել են ռազմաբեմում, այլ ոչ իսկապէս Կովկասի սահմաններում։ Ընդ սմին նայելով յայտարարութեան ձևին, եթէ հերոսի նամակի մէջ մատնանշուած դէպքերը տեղի ունեցած էլ լինին, ապա այդ բանը եղել է, ըստ երևոյթին, նախ քան իմ Կովկաս գալը։

Ինչ վերաբերում է Էրզրումում հայերի գոյքերը զինուորական իշխանութիւնների կողմից իբր թէ անկանոն կերպով գրաւելու խնդրին, այս առթիւ ես անձամբ խօսակցութիւն եմ ունեցել ինձ այցելած հայոց եպիսկոպոս Մեսրոպի հետ։ Կասկածելով բանակի համար նշանակութիւն չունեցող մասնաւոր գոյքի գրաւման և օգտագործման մասին մի ինչ-որ ականատեսից նրա ստացած ճշտութեանը, ես հենց եպիսկոպոսի մօտ կազմեցի և ուղարկեցի հեռագրային մի հարցում պատշաճ իշխանաւորին, խնդրելով հաղորդել, թէ ճիշտ են արդեօք լուրերը, և ընդ սմին մատնանշեցի, որ մասնաւոր գոյքերի օգտակործումը առանձին անձերի կողմից թոյլատրելի չէ։ Կատարուած քննութիւնը կտրականապէս հերքեց այդ լուրը։

Ուստի չեմ կարող ի վերջոյ ցաւ չը յայտնել, որ պ. Պապաջանեանը այդքան թեթև կերպով որոշել է Դումայի ամբիոնից վերագրել ինձ մի բան, որին ես այս դէպքում ընաւ մասնակից չեմ։

Ա. Եանուշկեւիչ։»

***

Պետական Դումայի պարապմունքները Կայսերական հրամանով ընդհատուեցան ապրիլի 4-ին և շարունակուելու են մայիսի 16-ից։

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԻՒՆ*)

Այս վերնագրով մի շատ շահեկան յօդուածում արգոյ հոգեբոյժ (психіатръ) Օրշանսկին[1]) տալիս է լուրջ ուսումնասիրութիւն վերոյիշեալ հարցի մասին, որին հարկաւոր է ծանօթանալ և հայ հասարակութիւնը։ Լուսաւորեալ երկրներում յիշեալ հարցը առանձին ուշադրութեան է արժանացել և կազմուել են ընկերութիւններ, որոնք ուսումնասիրում են այդ ամեն կողմից։ Հռչակաւոր Գալտոնը՝ այդ նոր գիտութեանը, որ պիտի ուսումնասիրէ մարդկային սեռի բարելաւումը, նոր անուն է տուել՝ «Եւգենիկա» (Эвженика[2])։ Պիտի ասել, որ այդ հարցով զբաղուել են և հին ժամանակներում, մանաւանդ Յունաստանում, հանճարեղ իմաստասէրներ՝ Արիստոտէլն ու Պլատոնը։ Վերջինը տեսնելով Աթէնքի ազգաբնակութեան նուազումը, համեմատած սպարտացիների հետ՝ իր «Հանրապետութիւն» գրուածքում մի շարք միջոցներ է առաջարկում մարդկային սեռի ազնուացման մասին։ Ըստ Պլատոնի ոչ ոք իրաւունք չունի ընտրել իրան համար կին կամ այր ամուսին առանց կառավարութեան թոյլտուութեան։ Ամենալաւ այրերը պիտի յաճախ ամուսնանան ամենից ընտիր կանանց հետ. իսկ վատերը՝ վատերի հետ՝ շատ սակաւ։ Առաջին զոյգերի զաւակներին պիտի կրթել, իսկ երկրորդներին՝ ոչ։ Երիտասարդ քաջ զինուորներին պիտի տալ շատ կին լաւ սերունդ պատրաստելու համար։

Պլատոնի այդ մտացածին (ֆանտաստիկ) պետութեան ծրագրի մէջ մտնում են սոցիալական սեռական առողջապահութեան սաղմերը։ Օրինակ՝ նա չի թոյլատրում կանանց՝ 20 տարեկանից առաջ և 40 տարեկանից յետոյ և մարդկանց 56 տարեկանից յետոյ երեխայ ունենալ։ Պլատոնը նկարագրում է, որ շատ սակաւ է պատահում, որ շատ երիտասարդ ամուսինների զաւակները քաջառողջ լինեն։ Պլատոնը իր միւս «Օրէնքների մասին» գրուածքում մեղմացնում է իր վերոյիշեալ միջոցները, սեռական կեանքի առթիւ, պահպանելով սեռական ընտրութեան սկզբունքը։ Նա, ինչպէս և ժամանակակից սոցիալական առողջապահութիւնը՝ բաժինքը (приданое) և դասակարգային մեկուսացումը (замкнутость) համարում է մեծ սոցիալական չարիք, որը արգելում է բնական սեռական ընտրութիւնը, և այդ է համարում պատճառ բարձր դասակարգերի այլասերման։ Նա առաջարկում է բարձր և ստորին դասակարգերի խառն ամուսնութիւն. Թարմ հոսանքներ մտցնելու առանձնաշնորհեալ դասի մէջ։

2000 տարուց յետոյ իտալացի վարդապետ Կամպանելլան[3]) գրում է բանտում Նոր Ուտոպիա պսակի մասին, տալով գերակշիռ դեր բժշկին, և այդ նոյնը պահանջում է նորագոյն Եւգենիկան—քաջածնութիւնը։

Տասնեհինգերորդ դարում նորից բարձրանում է այդ հարցը, որ առանձին ուշադրութեան է արժանանում։ Ալկոհոլականութիւնը, վատ ախտը (սիֆիլիսը), յանցաւորութիւնը, չափազանց աղքատութիւնը և հակաառողջապահական պայմանները ազգաբնակութեան վրայ այլասերող ազդեցութիւն են գործում։ Եւ ահա ֆրանսիացի հռչակաւոր հոգեբոյժ Մորէլն (Морель) առանձին ուշադրութիւն է դարձնում այդ հարցի վրայ, իբրև մի մեծ ազդակի՝ մարդկութեան այլասերման։ Այդ հարցը աւելի մեծ ուշադրութիւն գրաւեց Ֆրանսիայում, ուր ազգաբնակութեան աճման տոկոսը զգալիօրէն նուազում է և այդ պատճառաւ այդ երկրի ազգաբնակութիւնը համարեա միենոյն քանակի վրայ է մնում. բայց այժմ նկատւում է այդ երևոյթը աւելի նուազ չափով և միւս լուսաւոր երկրներում՝ Անգլիայում, Բելգիայում, Հիւս իսա-

* Տես «Համբաւաբեր» № 14.

[1]) Задача соціальной гигіены проф. Оршанскаго. «Вѣстникъ Европы», № 10, 1915 г.

[2]) Այդ խօսքը՝ յունարէն «լաւ» և «ծնունդ» խօսքերից է ծագում. հայերէն կարելի է ասել քաջածնութիւն։

[3]) Кампанелла, Государство солнца.

յին Ամերիկայում և հարաւային Գերմանիայում։ Ահա ինչու ամէն տեղ միջոցներ են ձեռնարկում՝ թէ մանկանց անագին մահացութեան և թէ բոլոր այն պայմանների դէմ, որոնք համարւում են պատճառ այլասերման։ Գերմանիայում մատնանշուած է մէկ ընտանիք, որը ծնունդ է առած մէկ ալքոհոլական ցքամոլ կնոջից։ Վերջինից առաջացել է 842 ծնունդ, որոնցից շատերը եղել են՝ յանցաւորներ, գողեր, թափառաշրջիկներ, մարդասպաններ և այլն, և դրանց հոգատարութիւնը նստել է տէրութեան 5 միլիոն մարկ։ Այդպիսի այլասերուած ընտանիքներ եղել են և Զուիցերիայում ու Ֆրանսիայում։ Ահա այս բոլոր տուեալները դառնում են հիմք եզրակացնելու, որ մարդկային սեռը այլասերման, հակում ունի, ուստի պիտի մտածել այնպիսի միջոցների մասին, որոնք մարդկային սեռը նախապաշտպանեն ֆիզիքական և մտաւոր այլասերումից։ Կան երկու տեսակ պայմաններ՝ ժառանգականութիւն և միջավայր, որոնք ազդում են սերնդի վրայ։ Միջավայրի տեսութեան պաշտպանները եւրոպական սոցիալ-դեմոկրատ կուսակցութիւնն է, երկրորդը՝ ինքնակամ (самоволный) փոփոխութեան օրգանիզմի՝ թէ բուսական և թէ կենդանական։ Սոցիալիստները ասում են, որպէսզի մարդկային սեռը չայլասերուի, պիտի շրջապատուի յաջող միջավայրով։ Բժ. Ղուդչենսօն ասում է՝—թէ սեռի բարելաւման համար բաւական է բարելաւել սնունդը. «Տուէք երեխաներին լաւ սնունդ մինչև 12 տարեկան հասակը, ես ձեզ խոստանում եմ մի գեղեցիկ սեռ». նոյն գաղափարին է Մաքս-Նորդաուն։ Բայց այդ տեսութեան հետ չեն կարող հաշտուել նորագոյն կենսաբանական դպրոցը, գերմանական մարդաբան (антропологъ) Վէյսմանի կողմնակիցները, որոնք քարոզում են սոցիալ առողջապահական վերանորոգում (реформу) պսակի օրէնսդրական կարգաւորմամբ։ Ամենանշանաւոր ներկայացուցիչը այդ վերջին ուղղութեան Գերմանիայում Շալմէյերն է (Шальмейеръ)։ Սա հերքում է առհասարակ տնտեսական կարիքներով ժամանակակից աշխատաւոր զանգուածի (масса) ցեղի այլասերման բացատրութիւնը և առարկում է, որ այժմ ազգաբնակութիւնը աւելի լաւ դրութեան մէջ է, քան առաջ էր, միայն թէ այն ժամանակ, շնորհիւ բնական ընտրութեան աւելի զօրեղները, առողջները կարողանում էին ապրել, իսկ թոյլերը, հիւանդները արտաքսւում էին կեանքից։ Այս հեղինակը մեղադրում է սոցիալականութեան ի դէմս Մարքսականութեան, որը մասսայի բարելաւման փրկութիւնը համարում է դասակարգային կռիւը, բնաւ հերքելով ընորոշման (էւոլիւցիա) ընտրութեան պրոցէսը։ (Эволюціон. процессъ подбора)։

Սա խօսելով ամուսնութեան մասին առարկում է, որ այժմ ամուսնացողները իրենց ընտրութեան ժամանակ չեն ղեկավարւում ֆիզիքական և հոգեկան արժանիքներով, այլ ընտանիքի դրութեամբ, ծագմամբ, բաժինքով և այլն։ «Միայն միջավայրի բարելաւմամբ, առանց ընտրութեան պրոցէսի կարգաւորման չի կարելի նախապաշտպանել ցեղը այլասերումից», գրում է Շալմէյերը. ուստի պիտի ժամանակակից լուսաւոր ազգերը սեռական ընտրութիւնը օրէնսդրական կանոնաւորման ենթարկեն։ Ընկերվարականները (սոցիալիստները) վերջերս ընդունում են այդ ուղղումները. օրինակ աւստրիական բանուորական լրագրում երեւում է հետեւեալը, թէ բնութեան մէջ կենդանիների փոփոխութիւնները կատարւում են համաձայն նրանց բնածին սաղմնաւորումների (зачатки). ի հարկէ միջավայրի ազդեցութիւնը չի հերքւում, բայց այդ չունի վճռական նշանակութիւն և այսու չի որոշւում սեռի յառաջադիմութեան պրոցէսը. մանաւանդ այդ վերաբերելի է մարդկանց հոգեկան շրջանին (сфера)։

Բայց սոցիալ-ռամկավարութեան (դեմոկրատիայի) պահանջը՝ նախ կանոնաւորել միջավայրը, ապա արդէն՝ կենսաբանական ազդակը (факторъ) տրամաբանական է։

Բժ. Բ. Աղասարեան

(Կը շարունակուի)

---

# ԳԱՒԱՌ

ՏԱՃԿԱԿԱՆ ԲԱՍԵՆ։ Էրզրումի գրաւման շնորհիւ գաղթական մի նոր ու մեծ հոսանք է սկսուել Բասենում։ Վերադառնում են Ղարսի, Ալէքսանդրապոլի, Կաղզուանի և այլ շրջանները գաղթած հայերը դէպ իրենց գիւղերը, կամ մօտը գտնուող քրդական գիւղերը։

Առաջ Ներքին Բասենի 20 գիւղերում ապրում էին մօտ 6000 հոգի, ներկայումս փախստականների թիւը հասել է 10,000-ի և հոսանքը դեռ շարունակւում է։ Գալիս են նաև հին՝ 20 տարի առաջ Ռուսաստանի գիւղերը գաղթած հայերը իրենց հողին տիրանալու յուսով։

Անդրկովկասի գիւղերը գաղթածները ստացել են պետական նպաստ (паекъ) հոկտեմբերից մինչև ն. թ. փետրուար ամիսը, մինչդեռ մեր շրջանի գաղթականները ինչ ինչ դժուարութիւններից յետոյ՝ ստացան միմիայն նոյեմբեր և դեկտեմբեր ամիսներինը։

Շրջանիս գաղթականութիւնը վերջին երեք ամիսների ընթացքում քայքայուել է ֆիզիքապէս և տնտեսապէս։ Երեք ամիս շարունակ կառավարութեանը «ուլամ» (հարկ) են տալիս։

Չը նայելով, որ կառավարութիւնը վարձատրում է «ուլամ»-չիներին օրական 3 ռ. 50 կոպ., ժողովուրդը փոխարէն ոչինչ չի ստանում, փողի մեծ մասն ուտում են զանազան բախտախնդիր անձինք։ Չի յաջողւում ստանալ գոնէ կոտորուած կենդանիների արժէքը։

Եւ այսօր, երբ գաղթականութիւնը վարուցանի նախօրեակին է, մնացել է չուար։ Չը գիտէ, թէ ինչ պէտք է անի. կամ երբոր սերմ ստանայ ինչով պիտի ցանէ։

Գիւղատնտեսական ընկերութիւնը խոստացել էր հասցնել գաղթականութեան սերմն ու գործիքներ գարնանային ցանքի համար, բայց մինչև օրս չէ ստացուած և ոչ մի հատիկ սերմացու, չը նայելով, որ ժամանակն անցնում է, և Ընկերութեան վարչութիւնը չի էլ պատասխանում ժողովրդի բազմաթիւ դիմումներին։

Օրերը տաքանալուն պէս համաճարակ հիւանդութիւններն էլ սկսուել են։ Մանաւանդ տիֆ հիւանդութիւնը, որ մեծ տոկոս է խլում։ Քաղաքների Միութեան կողմից շրջանիս գաղթականութեան համար բացուած բժշկական կայարանը հնար չունի եղած կարիքը բաւարարելու։ Կարիքը շատ մեծ է։ Շատ քչերն են օգտւում և առանց դրական հետեւանքների, քանի որ հիւանդը պառկում է խոնաւ գետնին, նոյն տանիքի տակ, ուր և ընտանիքի առողջ անդամները։ Եւ մինչև մէկը առողջանում է, միւսներն են վարակւում։ Ընտանիքներ կան, որտեղ 3—4 հոգի հիւանդ պառկած են իրար կողքի, ծածկուած մի և նոյն վերմակով։ Այդ առթիւ դիմում է եղել Քաղաքների Միութեան գլխաւոր լիազօրին, թէ անհրաժեշտ է շրջանումս հիւանդանոց և սննդատու կայարան ունենալ։ Որոշել են բանալ միայն հիւանդանոց՝ այն էլ 10 մահճակալով, որ մի կաթիլ է ծով կարիքների դիմաց, և որը դեռ չի էլ բացուած։

Տաճկահայի անուան կոմիտէի կողմից՝ մօտ կէս ամիս է ինչ գործում է շրջանումս բացուած թէյարանը։

Էրզրումից շարունակ գաղթականներ են տանում Սարիղամիշ, այնտեղից էլ Ղարս ուղարկելու։ Հաւանական է, որ այդ գաղթականները մի կամ երկու ամսից վերադառնան մեր շրջանը։

Չը նայելով, որ մեր շրջանում ազատ տեղեր շատ կան, հնարաւորութիւն չը կայ այդ գաղթականներին բերել և բնակեցնել. քանի որ, նախ՝ պաշտօնական արգելքներ կան, և երկրորդ՝ միջոցներ չը կան գաղթականներին կերակրելու և հագցնելու։

Դ.

*
* *

*ԿԱՐՍ։ Վերջին ժամանակներս գրաւուած վայրերից Սարիղամիշ են գալիս փախստականների նորանոր խմբեր։ Վարչութիւնս ի նկատի ունենալով այդ հանգամանքը, Սարիղամիշ էր ուղարկել շրջիկ-լիազօր պ. Գաս. Յովհաննիսեանին, յանձնելով նրան անկողիններ ու զանազան հագուստեղէն եկողների կարիքները բաւարարելու համար։*

*Կ. Հ. Բ. տեղական վարչութիւնը տեղիս Կենտր. կոմիտէի նախագահ պ. Հ. Նորհատեանին յանձնարարել է վարձելու նորեկ գաղթականների համար հանրակացարաններ և հրաւիրել մի ազատ աշխատակից, որը պէտք է եկող գաղթականներին տեղաւորէ այդ հանրակացարաններում, խնամէ նրանց, ցուցակագրէ և բիչ հանգիստ առածներին տեղափոխէ Կարս կամ ուր յարմար կը նկատուի։*

*Այդ նպատակի համար տրուած է 300 ռ. և հեռագրուած է Հայկ. Կենտր. Կոմիտէին ուղարկելու կարևոր գումար և կարգադրել, թէ ուր ուղղեն այդ նորեկ գաղթականներին։ Մեր շրջանում կան բազմաթիւ որբ երեխաներ, որոնց համար կարևոր է շուտափոյթ կարգադրութիւն։*

***

*ՔԱՐՈՒԱՆՍԱՐԱ։ Ղազախի շրջանի փախստականների որբ երեխաների համար որոշուած որբանոցը երկու ամիս է, ինչ բացուած է։ Հաւաքուած որբերի թիւը 50-ի է հասնում, որոնց վրայ աւելացան նաև Դիլիջանից բերուած 54 որբ ես։ Որբերը տեղաւորուած են Ընկ. սեփական շէնքում և կից վարձուած սենեակներում։*

*Որբանոցի ներքին կեանքը միանգամայն գոհացուցիչ է. աշխատաւոր ձեռքերը ամեն ճիգ ու ջանք չեն խնայում այդ փոքրիկների մաքրութեան և տնտեսական կանոնաւոր մատակարարման գործին։ Որբերի արտաքին տեսքը և մաքրութիւնը տեսնողի վրայ լաւ տպաւորութիւն է թողնում։ Նախագահ պ. Ս. Յարութիւնեանը առաջին անգամ որբանոց մտնելով հիացաւ։*

*Որբերի դաստիարակութիւնը մինչև օրս յանձնուած է տեղիս գաղթական ուսուցչին, որ ծխական դպրոցին համընթաց առաւօտեան պարապում է I և II բաժանմունքի, իսկ ճաշից յետոյ նախապատրաստականների հետ։*

*Երկրորդ անգամ լինելով վերջերս Ամերիկեան հայանպաստ Կոմիտէի ներկայացուցիչ՝ պ. Մակկալում տեղս եկաւ, գաղթականներին պակաս մնացած անհրաժեշտ պիտոյքներ տալու, որը յանձնարարեց տեղիս լիազօր Տ. Մեսրոպ Եղիկեանին՝ տալ տանաման, գլխաշորեր (կանանց համար), քարիւղ, և խոտացու շաքարի համար որոշուած գրամ ես ուղարկել։ Մթերքների անտանելի այս սուղ ժամանակին, պ. Մակկալումի այս քայլը, որքան ուրախալի և սփոփիչ է տեղիս թշուառ գաղթականների համար։*

*—Շրջանիս փախստականները սկսել են արդէն մեծ ուրախութեամբ Վան և շրջակայ գիւղերը դնալ իրենց քանդուած օճախը նորոգելու յուսով։*

*Գաղթական*

***

*ՕԼԹԻ։ Շրջանիս բանակի հայ զինուորների աջակցութեամբ Իսպիրի և նրա գիւղերից, մահմեդականների մօտ պահուած փախստականներից վերջին օրերս գտել, բերել էին Օլթի 73 հոգի—կին, երեխաներ և մի քանի երիտասարդներ, որոնց անուանացուցակը լրիւ կազմուած է։ Տեղիս գաւառապետի կարգադրութեամբ փախստականներին տեղաւորեցինք Քաղաքների Միութեան յատկացրած վրանում և մինչև օրս խնամւում էին սննդով և թէ սպիտակեղէնով. հիւանդացածներն էլ բժշկւում էին Միութեան հիւանդանոցում։ Գաւառապետը վճարեց նրանց՝ կառավարութեան կողմից գաղթականներին որոշած պայոկն, այն է՝ մինչև 5 տարեկաններին օրը 10 կոպ., իսկ 5-ից վեր 20 կոպ.։*

*Այս փախստականները՝ սակաւ բացառութեամբ՝ ունէին Ռուսաստանի զանազան քաղաքներում գերդաստանի անդամներ և ազգակիցներ, որոնց անմիջապէս ուղարկուեց հեռագիրներ։*

*Բոլորին ֆուրգոններով և կառավարութեան կողմից նշանակուած պահապանի ուղեկցութեամբ ճանապարհեցինք Ալէքսանդրապոլ։ Այնտեղից երկաթուղով գնալու են Եկատերինոսլաւ գծի վրայ* Енагевъ *կայարանը, իրենց երկրացի պ. Շահպազ Մատոնեանցի մօտ, որին առանձին գրութեամբ առաջարկուած է ուղարկել իրենց արիւնակիցների և ազգակիցների գտնուած տեղերը։*

*Տէր-Մարգարեանց*

***

*ՕՐԻՆԱԿԵԼԻ ՔԱՅԼ*

*ԳՈՐԻՍ, 3 մարտի։ Տարիներ շարունակ հայ մամուլը խարազանում է ժողովրդի մէջ արմատացած մի շարք պախարակելի և վատ սովորութիւններ։*

*Ամենից շատ տարածուած, արմատացած և վնասակար սովորութիւնը «քելեխն» է, որը հարիւրաւոր ընտանիքների թշուառութեան, աղքատութեան ճիրաններն ձգելու պատճառ է եղած։ Քելեխը վերացնելու առաջին և սեպուհ պարտականութիւնը պատկանում է հոգևոր դասին, հոգևոր իշխանութեան և նրա ստորադրեալ քահանաներին։*

*Անցեալ 1913 թ. Տաթևի հոգևոր կառավարութիւնը վիճակիս ստորադրեալ քահանաներին հրահանգեց հեռու մնալ, չմասնակցել և խորհուրդ չը տալ ննջեցեալների համար գիւղերում քելեխներ կազմակերպելու։*

*Կառավարութեան հրահանգները ունեցան իրանց բարերար ազդեցութիւնը, և գիտակից մասը ուրախութեամբ ընդառաջ գնաց քելեխի վերացման ու փոխանակ անտեղի կերուխում սարքելու, իր լուման նուիրաբերեց գիւղի դպրոցի, եկեղեցու բարեզարդութեան, բարեգործական այլ և այլ նպատակների։*

*Ուրախութեամբ արձանագրելու է, որ ամսիս 26-ին Խնածախ գիւղացի Բախշի և Վարդուհի Յովսէփեան ամուսինները իրանց մօր՝ Մարիամի յիշատակին քելեխի փոխարէն նուիրաբերեցին նոյն գիւղի աղքատիկ եկեղեցու բարեզարդութեան 200 ռ., գիւղի չքաւոր ծխականներին 25 ռ., հայ փախստականներին 50 ռ., փախստականների որբերին 25 ռ. և հայ կամաւորների որբերին 25 ռ., ընդամենը 325 ռուբլի։*

*Վերջին մի հարիւր ռուբլին փոխադրելով յարգելի խմբագրութեանդ, խնդրում եմ հասցնել ըստ պատկանելոյն և «Համբաւաբեր»-ի առաջիկայ համարներից մէկում տեղ տալիք գրութեանս ի միամտութիւն նուիրատուների։ Ցանկալի է, որ Յովսէփեանների բարի և գեղեցիկ գործը օրինակ լինի հայ ժողովրդի ամեն խաւերին։*

*Վահան Վ. Տէր-Գրիգորեան*

***

*ԱԽԱԼՔԱԼԱՔԻ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՎԻՃԱԿԻՑ*

*Անցեալ փետրուարի սկզբներին տեղս հասան Տանձոտի փախստական 550 որբևայրի՝ կիսակենդան, մերկ ու անօթի։ Թշուառներին իսկոյն օգնութեան հասաւ տեղիս Հ. Բ. Ընկ.-եան ճիւղը և պատսպարեց անօրինակ խնամատարութեամբ։ Բոլոր գովեստից վեր էր հայր նախագահ Համազասպ քահ. Տէր-Գրիգորեանի հայրական խնամքը և կարեկցութիւնը դէպի անմխիթար փախստականները։ Նրա դռները բաց են եղել անխտիր բոլոր խեղճերի առաջ մինչև օրս։ Նոյնպէս նուիրուած է գաղթականների շահերին ծառայելու Ընկերութեան նախագահ պ. Վ. Շահպարոնեանը, որի գրասենեակը մշտապէս յաճախում են թշուառները զանազան դիմումներով։ Գաղթականութեան հոսանքի առաջին ամիսներում հանդէս եկաւ տեղական «Եղբ. Օգնութ.» յանձնաժողովը, որը 2 ամսուայ գործունէութիւնից յետոյ հեռացաւ ասպարիզից։ Անցեալ ապրիլ ամսում առաջ գալով գաւառական յանձնաժողովը ստանձնեց գաղթականների խնամատարութիւնը, բաց արաւ ճաշարան, որտեղից բաժանւում էր կերակուր և մեծերին 2 ֆ., իսկ 15 տարեկանից վար երեխաներին 1 ֆ. հաց։ Այն օրուանից, երբ գործը ելաւ Բ. Ընկ. ձեռից, ճաշարանը ամենակարճ ժամանակից դարձաւ բարի բուն նշանակութեամբ*

զեծումների բուն։ Կերակուրը պատրաստւում էր ոչ թէ մսից, (որ որոշուած էր իւրաքանչիւրին կէս ֆունտ), այլ մեծ մասամբ ոտներից, թոքերից և գլխից։ Քանի՜ քանի անգամ խնդրեցին վերացնել ճաշը և փոխարէնը նշանակել բաժին մի քանի կոպէկ, սակայն անցաւ ապարդիւն։ Փորձեցին հրաժարուել կերակուր ստանալուց, սակայն այդ յանդգնութեան համար ենթարկուեցին ամենախիստ հալածանքի և զրկանքի։ Անից ու երկիւղից կրկին ստիպուած եղան ընդունել կերակուրը, որպէսզի չզրկուեն գոնէ հացից։ Տեսնելով թշուառների այդօրինակ անմխիթար կացութիւնը, տեղիս Հ. Բ. Ընկերութիւնը իւր սուղ միջոցներից նշանակեց 5—7 կոպ. բաժին իւրաքանչիւրին օրական ծախքերի համար։ Վերջին օգնութիւնը շարունակուեց մինչև օգոստոս ամիսը, որից յետոյ այդ էլ դադարեց։ Վերջապէս, գաղթականները տեսնելով, որ իրանց պատճառով մեծամեծ գումարներ են շռայլւում բոլորովին աննպատակ կերպով, այս տարի յունուարի 17-ին մի խնդրագրով դիմեցին գաւ. կոմ. պ. Նախագահին և հրաժարուեցին կերակուրից։ Սակայն, ի զարմանս բոլորի, ճաշարանում ծառայողները դարձեալ ստանում են իրանց ռոճիկները և մնում անգործ։ Ուրեմն, ամիսներ շարունակ թշուառները մնացել են միմիայն 1—2 ֆ. չոր հացով։ Այս մի տարուայ ժամանակամիջոցում չեն ստացել ոչ շոր, ոչ վառելիք, ոչ սապոն, ոչ նաւթ և ոչ բժշկական օգնութիւն։ Այստեղ ևս մասամբ օգնութեան հասել է Բ. Ընկերութ. հոգալով տների վարձը և դեղի փողը։ Օգնել է երբեմն և վառելիք տալով։ Փետրուար ամսից դիմել են Կ. Հ. Բ. Ընկ.-եան և կառավարութեան, որ կարողանան վերադառնալ հայրենիք. լիազօրի միջոցով դիմել են նաև Թ. Հ. Կ. Կոմիտէին լծկան ու կթան գնելու համար։

Տանձոտեցի

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Պետրոգրադից պ. Սարիբէգեանը հեռագրում է Հ. Կենտ. Կոմիտէի Նախագահ պ. Ս. Յարութիւնեանին.—Կազմակերպիչ Կոմիտէն, որի մէջ մտնում են Մոսկուայի և Պետրոգրադի ներկայացուցիչները, մայիսի կէսին հրաւիրում է տեղական հայկական ընկերութիւնների կոմիտէների և Եղբայրական Օգնութեան ներկայացուցիչների համագումար, որոնք օգնութիւն են հասցնում հայ փախստականներին, քննելու փախստականների վիճակը և կազմակերպելու կանոնաւոր օգնութիւն։ Շրջաբերական հրաւէրները և համագումարի ծրագիրը կուղարկուեն մօտիկ օրերս։

***

Նախիջևանից հեռագրում են.—Խնդրում ենք փոխադրել որբանոցի փետրուար, մարտ ամիսների և, եթէ հնար է, տօների պատճառով, ապրիլ ամսուայ պահպանութեան նպաստը։ Հաշիւները կազմուած են։

***

Ղարաքիլիսայից ևս հեռագրում են.—Այստեղ բացուած է սննդատու կայան եկող փախստականների համար։ Մինչև ֆելդշերի գալը անհրաժեշտ է թողնել այստեղ բժիշկ Կարալեանին ժամանակաւորապէս։ Մուշի փախստականները փոխադրւում են Խնուս։ Մենք ճանապարհւում ենք։ Ղամարեան

***

Կովկասեան պատերազմական շրջանի շտաբին կից հիմնուած է նահանգապետի նախագահութեամբ «հիւանդ և վիրաւոր զինուորների խնամատար կոմիտէ»։ Այդ կոմիտէին մասնակցելու համար Կ. Հ. Բար. Ընկ. կողմից անդամ է ընտրուած Նախագահ պ. Ս. Յարութիւնեանը և փոխ-անդամ իշխ. Մ. Մ. Թումանեանը։

***

Հայ Կենտր. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացաւ՝ Թիֆլիսի մի խումբ աշակերտ-աշակերտուհիներից 50 ռուբ. և Պետրոգրադից՝ օր. Աննա Սուլթան-Շահից 70 ռուբ.։ Այդ 120 ռուբլով բրինձ է գնուած և ուղարկուած Ղարաքիլիսայի և Մշոյ շրջանների գաղթականներին։

***

Գեն. Մ. Թամամշեանը յանձնել է Հայկ. Կենտր. Կոմիտէին բանալ հինգ սննդատու կայան Վան վերադարձող փախստականների համար Իգդիր-Թափարիզի գծի վրայ։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը որոշեց տօների պատճառով յատկացնել տեղական չքաւորներին 500 ր.։ Այդ առթիւ ընտրուած մասնաժողովը դիմելով քաղաքիս միաբանութիւններին, խնդրել է ուղարկել աղքատ ծուխերի անուանացուցակը։

***

Պոլկովնիկ իշխ. Կոնստանտին Արղութեան-Երկայնաբազուկը ի նկատի ունենալով Գորու ս. Աստուածածին ծխ. դպրոցի սուղ վիճակը, ներկայացրել է Խորհրդին Ներքին փոխառութեան $5\frac{1}{2}\%$ 1000 ռուբլիանոց մի օբլիգացիա, որպէսզի այդ գումարը մնայ անձեռնմխելի, իսկ տոկոսները գործադրուեն յօգուտ նոյն դպրոցի, ըստ հայեցողութեան դպրոցի հոգաբարձութեան։

***

### ԳՐԱԴԱՐԱՆ-ԸՆԹԵՐՑԱՐԱՆ

Մարտ ամսուայ ընթացքում Կ. Հ. Բ. Ընկերութեան ընթերցարանն են յաճախել 4,910 կին և 4,260 տղամարդ, ընդամենը 9170 հոգի։ Գրադարանից տրուած է կարդալու համար հայերէն 3,323 և ռուսերէն 1395 գիրք, ընդամենը 4718 գիրք։

***

### ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷ

Մարտի 17-ից Կոմիտէի կողմից ուղարկուած են Խնուսի և Մշոյ շրջանները պ. Դր. Ղամարեանի ղեկավարութեամբ բժշկասանիտարական խումբ, որին մասնակցում են պ. պ. բժ. Մանուշակեան, ֆելդշեր՝ Գալստեան, երկու դէզինֆեկտոր, մի գթութեան եղբայր և կայանի կառավարիչ Արշակ Մանուկեան։ Խումբն ունի չորս նստելու ձի, 10 երկանիւ կառք (двуколки) և այլ կարևոր պարագաներ և վարպետներ շրջանում քարուքանդ եղած ջրաղացները վերականգնելու։

***

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է պ. Համբարձում Եսայեանից յօգուտ տեղական չքաւորների մի հարիւր ռուբլի։

***

Հայկական Կենտրոնական Կոմիտէի ժողոված վիճակագրական տեղեկութիւններից երևում է, որ մինչև յունուարի 1-ը 1916 թ. բացուած են փախստական երեխաների համար 36 ապաստարաններ և ընդունուած են այդ ապաստարաններում 4.011 երեխաներ, ծախսուել է 206.925 ռ. յունուարից սկսուած բացուել են մի շարք նոր ապաստարաններ—Քարաւանսարա, Բաշքէօյ, Բաթում, Տաճկական Ղարաքիլիսա և այլն։

***

Հ. Կ. Կոմիտէի ուղարկած բժշկական-սանիտարական խումբը, գլխաւորութեամբ բժիշկ Նշան Մանուշակեանի արդէն հասել է Մուշ և սկսել իր գործունէութիւնը։ Կարիք է զգացւում դեղորայքի։

***

ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐԻ առթիւ Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է՝

— Պ. Գրիգոր Ստեփանիչ Մեասնիկեանից յօգուտ փախստականների — 100 ռ.։

— Պ. Յակովբ Աբրահամեանից յօգուտ չքաւորների—2 ռ.։

— Պ. Համբարձում Եսայեանից յօգուտ չքաւորների—100 ռ.։

— Պ. Գրիգոր Զիրուխչեանից յօգուտ չքաւորների 25 ռ. և յօգուտ գաղթականների 15 ռ., ընդամենը 40 ռ.։

— Նունէ Լազարեանից յօգուտ ճաշարանի, մատաղի փող 10 ռ.։

— Տիկին Մարգարիտ Արեանից յօգուտ ճաշարանի 50 ռ.։
— Մարիամ Գալաչեանից յօգուտ գաղթականների 5 ռ.։
— Նինա Սոլ. Ասլամազեանից յօգուտ գաղթականների 3 ռ.։
— Արհեստաւորների ընկերակցութիւնից յօգուտ չքաւորների 15 ռ.։

* * *

Հայ փախստականներին նպաստող Ամերիկական Կոմիտէի ուղարկած բժիշկ Կրեստի և երկու գթութեան քոյրեր հինգշաբթի օրը հասան Թիֆլիս և ներկայացան Հայկական Կենտրոնական Կոմիտէին. նրանք բերել են իրենց հետ շատ դեղորայք և այլ իրեր։ Հ. Կ. Կոմիտէի որոշմամբ խումբը ուղևորուելու է Մուշ, Խնուս։ Ամերիկական Կոմիտէն որոշել է բաց անել և սննդատու կայարաններ։

# Քրօնիկոն

Մարտի 30-ին Թիֆլիսում մեռաւ հայազգի իշխան Նիկողայոս Վասիլեան Երկայնաբազուկ-Արղութեանը, որ երկու անգամ Թիֆլիսի քաղաքագլուխ է ընտրուել։ Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ ապրիլի 7-ին, իսկ թաղումը Սանահնի վանքի հանգուցեալի տոհմական դամբարանում։ Յոյս ունենք, հանգուցեալի, մանաւանդ Արղութեան տոհմի անցեալին վերադառնալու այլ անգամ։

* * *

Թիֆլիսումն է գտնւում վանեցի մի հմուտ արհեստաւոր՝ Նազարէթ Բէյլարեան, որը շինում է շատ կատարելագործուած փայտեայ ոտներ, անդամահատուած ոտքի փոխարէն, շատ ձեռնտու գնով։

* * *

Թիֆլիսում ապրող փախստականներին, որոնց համաձայն նախկին կարգադրութեան իրաւունք էր տրուած մնալ քաղաքում մինչև ապրիլի 1-ը, այժմ կառավարութեան կարգադրութեամբ երկարացրած է այդ ժամանակամիջոցը մինչև առաջիկայ մայիսի 1-ը։

* * *

Թիֆլիսի իրաւասուների ընտրութիւնը վերջացաւ։ Հայերից իրաւասու են ընտրուել 53 հոգի, ռուսներից 11 հոգի, վրացիներից 12 հոգի, ընդամենը 76 հոգի։

* * *

Ամերիկայի կոմիտէի ներկայացուցիչները գնել են Պարսկաստանի և Վանի շրջանների հայերի համար լծկաններ և այլ անասուններ 350,000 ռ.։

* * *

Կիրակի, ապրիլի 3-ին տեղի ունեցած քաղաքային լրացուցիչ ընտրութիւնների ժամանակ, ընտրուած են իրաւասուների անձնափոխանորդներ. I քաղաքամաս՝ իշխ. Ա. Ա. Բէհբութեան և Ե. Բ. Մորոզով, II քաղաքամաս՝ Բ. Ե. Քալանթարեան, Գ. Ի. Յովհաննիսեան, III քաղաքամաս՝ Ե. Ն. Ստեփանեան, Վ. Ի. Ծովիանեան և Ս. Ա. Վարդազարեան և IV քաղաքամաս՝ Ի. Ս. Իգիթեան, Ս. Ա. Փորաքաշուիլի, իսկ իրաւասուներ՝ VI քաղաքամաս, Բ. Տ. Կովալեսկի, Լ. Մ. Տէր-Յովհաննիսեանց և Դ. Ա. Շահվերդեան։ Անձնափոխանորդներ՝ Ս. Ց. Խունդաձէ, Ա. Շահխաթունեան։

* * *

Քաղաքային վարչութիւնը որոշել է մայիսի 1-ից տրամուայի գիշերային երթևեկութիւն հաստատել. առայժմ վագոնները պիտի բանեն մինչև գիշերուայ ժամի 2-ը։

* * *

Քաղաքային Պուշկինեան գրադարանը մարտ ամսուայ մէջ ունեցել է 4708 այցելու։

* * *

Երկուշաբթի, ապրիլի 11-ին, երեկոյեան 8 ժամին, Թիֆլիսի Ժողովարանում պրոֆէսոր Վ. Ց. Տոտոմեանցը կը կարդայ դասախօսութիւն՝ «Եւրոպան տնտեսական և սոցիալական տեսակէտից ներկայ պատերազմից յետոյ»։

«Մեղու» աշխատանքի տան վարչութիւնը որոշել է իր բանուորուհիների համար հիմնել փոխատու-խնայողական դանձարան, որի համար ընտրուած է մի մասնաժողով՝ կանոնադրութիւնը մշակելու և գործը կազմակերպելու համար։

* * *

Բարձրագոյն եղած հրամանի համաձայն, ներքին գործերի մինիստրութեան կարգադրութեամբ, զատկական տօներին և մայիսի 6-ին Բարձրագոյն անունով Թիֆլիսի բոլոր պօստային հիմնարկութիւններում հեռագրեր ամենևին չեն ընդունուելու։

* * *

Գրական նորութիւններ.—Մեր աշխատակից Քամալեանց Ս-ը պատրաստել է տպագրութեան համար 1. «Դաղըստանի Շամիլը» պատմ. աշխատասիրութիւնը (մէջը կըլինեն Շամիլի, նրա հայ կնոջ, հայ թարգմանների և այլոց պատկերները) 300 էջ։ 2. Վերջացնում է «Շուլաւէրու գաղթականները և նրանց բարբառը» աշխատութիւնը (պատկերներով) 500 էջ։

# Արտաքին տեսութիւն

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆՆԵՐԻ ՊԱՌԱԿՏՈՒՄԸ

Վերջին ամիսների քաղաքական կեանքի շարքում ամենից աչքի ընկնող երևոյթն է հանդիսանում գերմանական ընկերվարականների շարքերում առաջացած պառակտումը։ Այդ պառակտման մասին վաղուց է ինչ խօսւում է. սրանից մի երեք ամիս առաջ մինչև անգամ պառլամենտի ընկերվարական ֆրակցիայից բաժանուեցին երկու հոգի—Լիբկնեխտ և Ռիւլէ. սակայն այս բոլորն աւելի կուսակցական ներքին տարաձայնութիւնների բնոյթ էր կրում, քան պառակտման. վերջին շաբաթներս միայն խնդիրն այնքան լրջացաւ, որ կուսակցութեան հակամարտ հատուածները ստիպուեցան հրապարակ դուրս գալ իրար դէմ պառլամենտում և բուրժուական կուսակցութեանց չարախինդ քրքջոցների տակ պաչտօնապէս յայտարարուեց պառլամենտական ֆրակցիայի փոքրամասնութեան անջատումը մեծամասնութիւնից։ Ներկայումս ընկերվարական կուսակցութեան բոլոր կազմակերպութիւնները և մամուլը զբաղուած են այս խնդրով։ Երկիւղ կայ, որ պառակտումը պառլամենտական ֆրակցիայից կանցնի կուսակցութեան կազմակերպութիւնների մէջ և այնտեղ էլ համապատասխան անջատում կառաջացնի։

Ստեղծուած դրութիւնն ունի իր նախապատմութիւնը, որ հասնում է մինչև պատերազմի առաջին օրերը։ Ինչպէս յայտնի է, այդ օրերին այնպիսի մի հայրենասիրական խանդավառութիւն էր տիրել ամբողջ գերմանացի ժողովրդին, որ ամենաչնչին փորձն իսկ՝ դէմ գնալու ստեղծուած տրամադրութեանը՝ կը հաչակուէր դաւաճանութիւն ոչ միայն պետական, այլ և ժողովրդական շահերի դէմ։ Այս հանգամանքներում ընկերավարական կուսակցութիւնը մի ծանր խնդրի առաջ էր կանգնած։ Կառավարութիւնը հինգ միլիարդ մարկ էր պահանջում պատերազմական ծախքերի համար։ Ի՞նչ պէտք էր պատասխանել նրան։ Մինչև այդ ժամանակ ընկերվարական կուսակցութիւնը պետական բիւջէն քուէարկելիս մի սկզբունք է միայն ճանաչել.—«բուրժուական կառավարութեանը ոչ մի մարդ և ոչ մի փէնիգ»! Տեղական Լանդտագներում—Բաւարիայում, Բադէնում և ընդհանրապէս հարաւային Գերմանիայում—ամեն անգամ երբ այս սկզբունքին հակառակ մի քայլ է կատարուել՝ կուսակցութեան մէջ ահագին աղմուկներ են առաջացել։ Կատաղի է եղել ընկերվարականների թշնամութիւնը մանաւորապէս զինուորական բիւջէի հանդէպ, որովհետև զինուորականութիւնը ճանաչուել է նրանց կողմից իբրև մի մշտական սպառնալիք խաղաղութեան։ Եւ ահա այս բոլորից յետոյ ընկերվարականները պէտք է իրենց վերաբերմունքը

որոշէին դէպի կառավարութեան պահանջը, ուրիշ խօսքով նրանք պէտք է ընտրութիւն անէին մինչև այժմ իրենց դաւանած սկզբունքի և ժողովրդի հայրենասիրական տրամադրութեան միջև։ Այդ ընտրութիւնը նրանք կատարեցին 1914 թ. օգոստոսի 4-ին՝ միաձայն ընդունելով կառավարութեան պահանջը։ Ճիշտ է, մինչև այդ վերջնական քուէարկութիւնը ֆրակցիայի առանձին նիստին 14 հոգի, հաւատարիմ կուսակցութեան աւանդութիւններին, բիւջէին դէմ էին յայտնուել, սակայն սրանք ռայխստագի նիստում չը խախտեցին ընդհանուր կարգապահութիւնը և մինչև անգամ ֆրակցիայի յայտարարութիւնը կարդաց նախագահ Հաազէն, որ վերոյիշեալ 14-ի թւին էր պատկանում։

Դրանից յետոյ քանի գնաց այս ընդդիմադիրների հոսանքն ուժեղացաւ։ Բելգիական արշաւանքի ժամանակ գերմանական զինուորականութեան կատարած վայրագութիւնները, միջազգային օրէնքների բազմաթիւ և բազմապիսի խախտումները, ներքին քաղաքականութեան մէջ կառավարութեան կատարած մի շարք հակաժողովրդական քայլերը և վերջապէս յաղթական պատերազմով յղփացած պանգերմանիստների յայտարարութիւնները՝ թէ Գերմանիան պէտք է իրեն կցէ նուաճած երկիրները—այս բոլորը ստեղծեցին մի դառն մթնոլորտ, որի մէջ վերոյիշեալ ընդդիմադիրների խմբակը արագ կերպով պէտք է ուռճանար։ Եւ իրօք, անցեալ տարուայ վերջին նրա թիւը հասնում էր մօտ 45-ի։

Սակայն այս խմբակի քննադատութիւնները մինչև դեկտեմբերի սկզբները ֆրակցիայի առաջին նիստերից դուրս չէին գալիս։ Բացի Լիբկնեխտից և Ռիւլէից, որոնք բիւջէի քուէարկութիւնների ժամանակ կամ ձեռնպահ էին մնում և կամ մեծամասնութեանը հակառակ ձայն տալիս՝ մնացածները, համաձայն կուսակցական դիսցիպլինի, ենթարկւում էին մեծամասնութեան որոշումներին։ Առաջին անգամ դեկտ. 8-ի նիստին էր, որ բացի Լիբկնեխտից և Ռիւլէից ընդդիմադիրներից 18 հոգի մեծամասնութեանը հակառակ ձայն տուին։

Այդ օրուանից սկսա՝ պառակտումը փաստօրէն հրապարակ է գալիս։ Թէ մեծամասնութիւնը և թէ փոքրամասնութիւնը զգում և շատ դէպքերում արտայայտում էին, որ գործակցութիւնն իրենց միջև անհնարին է։ Մարտի 11-ին ռայխստագի նիստում երկու հոսանքների ներքին պայքարը անհնարին չափերի է հասնում։

օրը փոքրամասնական Հաազէն ժամանակաւոր զինուորական տուրքերի դէմ խօսելով՝ շատ մռայլ գոյներով է ներկայացնում Գերմանիայի տնտեսական ու ռազմական վիճակը և յարձակւում է այն բոլոր մարդկանց դէմ, որոնք ցանկանում են պատերազմը շարունակել մինչև թշնամիների պարտութիւնը։ Այս պատերազմից, ասում է նա, ոչ ոք յաղթական չի դուրս գալու, և նրա հետևանքը լինելու է միայն Եւրոպայի աղքատութիւնն ու ամայութիւնը...

Այս յայտարարութիւնը իսկական փոթորիկ է յարուցանում ընկերվարականների մէջ. ամեն կողմից բացականչութիւններով աշխատում են խանգարել ճառախօսին։

Հաազէն ու Լեդեբուրը մի կողմից, Շայդէմանը, Էբէրտը և Զիւդեկումը միւս կողմից նիզակներ են ճօճում իրար դէմ։ Իսկ երբ Հաազէն թողնում է ամբիոնը՝ Շայդէմանը յայտարարում է, որ ընկերվարական ֆրակցիան հակառակ Հաազէի և իր փոքրաթիւ ընկերների պէտք է շարունակէ պատերազմի սկզբից որդեգրած քաղաքականութիւնը։ Սրանից յետոյ այլևս անհնարին էր պառլամենտական ֆրակցիայի մեծամասութեան և փոքրամասութեան գործակցութիւնը։ Վերջինս անջատւում է և կազմում առանձին ֆրակցիա։

Նոր ֆրակցիայի մէջ են մտնում թէ գերմանական թէ միջազգային ընկերվարութեան մի քանի ականաւոր ներկայացուցիչներ, ինչպէս Բերնշտայն, Քոհն, Հաազէ, Լեդեբուր, Շտադհագէն, Վուրմ և Ցուբայլ։ Ուշագրաւ է, որ այս ձախակողմեան թևի մէջ են գտնւում ռևիզիոնիզմի ամենից ականաւոր ներկայացուցիչները, որոնք կուսակցութեան աջակողմեան տարրերն են համարուել մինչև վերջերս։

Ներկայումս ընկերվարականները փաստօրէն երեք հատուածի են բաժանուած. Լիբկնեխտ և Ռիւլէ, որոնք անկախ դիրք են պահպանում, փոքրամասնութիւն են կազմում, որ 18 հոգ. է բաղկացած և կոչւում է Fraction der socialdemokratischen Arbeitsge meinschaft և մեծամասնութիւնը, որ պահպանում է ֆրակցիայի նախկին անունը, շարունակում է մնալ ամենամեծ կուսակցութիւնը ռայխստագում*)։ Սակայն, ինչպէս երևում է, վերջինս շատ անկայուն տարրերից է կազմուած. այդ երևում է նախ նրանից՝ որ երբ մեծամասնականները ռայխստագում ցանկանում էին Հաազէին խօսքից զրկել՝ նրանցից 15 հոգի վրդովուած թողին նիստի դահլիճը և ապա՝ նրանց ֆրակցիան Հաազէին և իր խմբակին ֆրակցիայից դուրս անելու որոշում տալիս է 58 ձայնով ընդդէմ 33-ի։

Ընկերվարականների պառակտումը մեծ հրճուանքի մէջ է ձգել ոչ միայն պահպանողականներին, այլև լիբերալներին։ Վերջիններս յոյս ունին, որ մեծամասնականները ժամանակի ընթացքում կմիանան իրենց։ Սակայն լիբերալների ձախակողմեան թևը իրաւացիօրէն մտահոգուած է այս պառակտմամբ, որովհետև որքան ուժեղ լինի ընկերվարականների թևը, այնքան էլ պառլամենտական ուժերի ընդհանուր հաւասարակշիռը դէպի ձախ կը թեքուի։

Ներկայումս ընկերվարական կազմակերպութիւնների մէջ բուռն քննութեան առարկայ է պառլամենտական ֆրակցիայի պառակտումը. ոմանք պարսաւում են փոքրամասութեանը, ոմանք խրախուսում։ Ամենքն սպասում են կուսակցութեան ընդհանուր ժողովին (պարտայտագին), որ պէտք է դատաւոր հանդիսանայ պառակտուած կողմերին։ Եթէ պարտայտագը երկու կողմերի համար էլ ընդունելի մի միջին ուղղութիւն չգտաւ, Գոտայի պարտայտագից ի վեր հաստատուած կուսակցական միութիւնը կը քանդուի և անպատուղ վէճերով բանուորութեան դասակարգային ուժը կջլատուի։ Սակայն գերմանացոց բանուորութիւնը, որի քաղաքական ուժը իր միութեան մէջն է, կթողնի՞, որ բանն այս ծայրայեղութեանը հասնի—ահա կարևոր հարցը։

Ա. Ջամալեան

## ԷՐԶՐՈՒՄԻ ԱՆՑԵԱԼԻՑ**)

Ը

### ԱՌԱՋԻՆ ՆՇԱՆՆԵՐԸ

I

Ռուսաց բանակը, բաղկացած մօտ 16—17 հազար հոգուց, մնաց Էրզրումում ուղիղ 7 ամիս։ Այդ ամբողջ ժամանակը Էրզրումի հայութիւնը ապրում էր բացառիկ, մինչև այդ չը տեսնուած պայմանների մէջ։ Նա զգում էր իրան բարձր իր վրայ տիրող թիւրքերից։ Այլևս այդ տիրողները չէին համարձակւում արհամարհել հայերին իբրև մի ստոր ցեղ, որ ապրում է աշխարհում միայն ստրուկ և կեղեքուող մնալու համար։ Տեսնում էին թիւրքերը այդ հայ ազգակիցներին ռուսաց քաջարի բանակում, պսակուած բարձր աստիճաններով, յաղթական փառքով։ Տեսնում էին և հայերը։ Այդ 7 ամիսը նրանց համար ազգային հպարտութեան ամիսներ էին, որոնք կենդանի օրինակներով ցոյց էին տալիս թէ ստրկութիւնը հայ ճակատագիրը չէ, թէ հայն էլ կարող է հրամանատար, կառավարիչ լինել։

Թիւրքական զօրքի հեռանալուց երեք օր յետոյ, փետրուարի 11-ին, մեծ հանդէսով Էրզրում մտաւ գործող բանակի ընդհանուր հրամանատար գեներալ-ադիւտանտ Լօռու Մելիքեանը։ Ռուսական

*) Նրա անդամների թիւն է 90, մինչդեռ կաթոլիկ կենտրոնը, որ բուրժուական կուսակցութիւններից ամենամեծն է, ունի 88 անդամ։

**) Տես «Համբաւաբեր» № 13։

Բայց ամենից սրտառուչ տեսարանը առջեւում էր։ Մօտենալով այն բլրին, որի վրայ հայ աշակերտները ողջոյնի երգեր էին երգում, ամեն անգամ կրկնելով «Կեցցես հայ ազգի քաջ զօրապետ Լազարոֆ—մեր ազգի պարծանք» խօսքերը, գեներալը ձին քշում է, մտնում երեխաների մէջ և խորապէս յուզուած, արտասուքն աչքերին ասաց. «Շնորհակալ եմ, իմ ազգի ծաղիկներ, բայց իմ լիակատար շնորհակալութիւնս պիտի ստանաք, երբ այս օրերս կը գամ ձեզ մօտ և անձամբ կը տեսնեմ որ իրաւ աշխատում էք ուսման գործի մէջ և իզուր չէ մեր ազգի յոյսը»... Միանգամայն աննկարագրելի է այդ խօսքերին հետեւած ժողովրդական հիացմունքի և յոյզերի ցոյցը... «Բաւական է ասել,—գրում է նոյն Երիցեանը,—որ այն ահաւոր, սարսափեցնող երեսի վրայ միմեանց ետեւից սահում էին խոշոր-խոշոր կաթիլ արտասուքներ և այն հռչակուած հսկան այս րոպէիս մի փափկասիրտ երեխայ էր ներկայանում իւրեան շրջապատող ռուսաց սպաների մէջ, որոնք ըմբռնել իրողութիւնը ի հարկէ չէին կարող»։

Մի ուրիշ շատ յուզիչ տեսարան էր քաղաքի մէջ։ Կտուրների վրայ հաւաքուել էին հայ կանայք։ Ահագին փառքով քաղաք մտած Լազարեանը դարձեալ վերցնում է գլխարկը և մի քանի անգամ բարձրաձայն ասում է. «Բարև ձեզ, իմ քոյրեր»։ Երիցեանը շարունակում է. «Խաչակնքեցին երեսները և բարձրացրին ձեռքերը դէպի երկինք Արզրումի այն համեստ հայուհիք, որոնց վրայ մեծ տպաւորութիւն գործեց այդպիսի բարի և մտերմական ողջոյնը»։

Լազարեանը մնաց Էրզրումում 15 օր։ Եւ այդ ամբողջ ժամանակը տօնախմբութիւն էր հայերի համար։ Հանդէսներ, այցելութիւններ, ընդունելութիւններ. հայ հերոսը մտերմացաւ, միանգամայն ձուլուեց իր ժողովրդի հետ, և մի օր վեր կացաւ ու գնաց, խոստանալով տխրած էրզրումցիներին մի անգամ էլ այցելել նրանց։

Բայց նա երկրորդ անգամ չը տեսաւ Էրզրումը...

Լէօ

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՎԱՆԻ ԴԻՒՑԱԶՆԱՄԱՐՏԻ ԱՌԱՋԻՆ ՅԱՂԹԱՆԱԿԸ

*Նուէր խմբապետ Աչճեան Օհանէսին*

Անցեալ 1915-ի ապրիլի 7-ի առաւօտն էր, ա՜յնքան պայծառ, ա՜յնքան սէգ. Վանի դիւցազնամարտի առաջին օրը, բռնութեան թօթափման և ժողովրդի ազատագրման կռուի առաջին օրը։ Հրացանի գնդակները սուլում էին վրէժխնդիր և տէրութեան թընդանօթները գոռում էին անխնայ։

Առաւօտեան արշալոյսին հետ դիրքերի վրայ ենք հպարտ սպառազինմամբ և անվախ սրտերով։ Կռիւը իր կատաղի ամբողջութեամբ սկսած է արդէն։ Կեանքը այնքան անուշ չէր հնչած կեանքումս, որքան այդ օրը, կռուի այդ առաջին ընկման վայրկենին, երբ անկախ ազատութեան, ազատ կեանքի արժէքը իր ամբողջութեամբ փայլում էր լիաթօք։

Խաչ-փողոցի դիրքերի վրայ է կռիւը, դիրքերէն ամենէն վտանգաւորը, Այգեստանի բանալին եղող կենտրոնին վրայ։ Թիւրք ոյժերը լաւ ըմբռնած էին, թէ ո՛ր տեղէն պէտք է պատռել շղթան և մտնել Այգեստանը, յեղափոխականների հայրենիքը, ըմբոստների անխորտակելի ծառաստանը.

Կէսօր է. դիւցազնամարտի առաջին օրուայ կէսօրը. արևը իր գարնանային համեստ ճառագայթներով ջերմ ու լոյս էր սըփռում խոնաւ դիրքերու մէջ մարտնչող հերոսների վրայ։

Խաչ-փողոցի 27 մարտիկները վրէժը սրտերում, ձգում են անհաւասար կռիւը,—կռիւը ազատագրման, սիրոյ, պատուի և արդարութեան պաշտպանութեան, անձի և ինչքի անձեռնմխելիութեան, տարիներէ ի վեր իրաւունքի և արդարութեան պաշտպան Եւրոպայի մեծ պետութիւններու բարոյական սկզբունքներու վըրայ յամառօրէն ծառացող այդ տարրական՝ և քաղաքանօրէն ու իրաւաբանօրէն այլ ևս հրամայական պահանջի շնորհների իրագործման համար։

Վրէժի այդ նուիրական կռիւը, որ մղւում էր երկու երկրացի ցեղերու միջև, կռիւ էր նաև մահեկի և խաչի, երկու յաւիտենական թշնամիներու։ Կռւում էին երկու կողմերն ալ նոյն կատաղութեամբ և յաղթելու նոյն մեծ և անխորտակելի յամառութեամբ։ Մէկը՝ տանելու համար արդարութեան մեծ յաղթանակը, միւսը՝ կատարելու համար վերի հրամայական որոշումը—ջնջելու, բնաջնջելու, անհետացնելու տաճկական այդ հսկայ անապատին մէջ, ըմբոստօրէն բարձրացող այդ ուռճացող ովազիսը. մէկը՝ շարունակելու խաղաղ զարգացման կուլտուրան, միւսը՝ շարունակելու քաշ տալ իր մահամերձ տեսքը լկուած, առաջինը՝ շղթայելու համար ինքզինքը քաղաքակրթուած մարդկութեան հետ, երկրորդը՝ շղթայելու ինքզինքը արագութեամբ գահավիժող քաոս անդունդի խաւարին հետ, մինը՝ ապրելու համար, միւսը՝ մեռնելու, մինը՝ ապրեցնելու, միւսը՝ մեռցնելու....։

Կռիւը ամբողջ ճակատին վրայ տարւում էր լարուած թընդանօթաձգութեամբ և մոսիններու սուր և ահարեկիչ շուոցով։ Երկու իրար խաչաձևող թնդանօթի գնդակների օգնութեամբ յառաջանում էին քիւրդ ու թիւրք կռուողները, մինչ թնդանօթի պայթուցիկ գնդակները խորտակում էին թուով այնքան քիչ և հաւատքով այնքան մեծ մարտիկների դիրքերը։ Դիրքը կորցուցած էր այլևս իր ապահովելու հանգամանքը, տան վերնայարկը քանդուած էր և բոցեղէն լեզուակները լափում էին ամբողջութեամբ, մինչ վար, շէնքի ներքնատունէն, տղերքը կռւում էին արհամարհելով ամեն վտանգ։ Թշնամին առիթէն օգտուած մօտենում էր։

— «Դէհ, տղերք, գոռաց կրակ կտրած խմբապետը, կռիւը կամաց կամաց տաքանում է և աւելի նշանակալից դառնում, մտէք դիրքեր և մի քիչ լուռ սպասեցէք, ո՛չ մի գնդակ»։

Աչճեան Օհանէսն էր այդ խմբապետը. տարիներու երկար գործունէութիւնը շատ բան սովրեցրած էր նրան։ Տղերքը լռեցին ու դարան մտան. թշնամին դեռ ռմբակոծում էր անվախ. տասնեակ մը գնդակներէն վերջ դադրեցաւ թնդանօթաձգութիւնը, ես ամեն բան վերջացած կարծելով, անզգուշութեամբ պատրաստւում էի դիրքէն դուրս գալ և քովիս ընկերոջը մօտենալ, երբ խմբապետը աւելցուց. «Տղերք, մօտենում է արժանիքի և փառքի վայրկեանը, թշնամին յարձակողականի անցնելու է պատրաստ, ոչ մի աւելորդ գնդակ»։ Խմբապետը, երբ մի քանի ցուցմունքներէ վերջ, դեռ հազիւ վերջացուցած էր իր խօսքը, թիւրք զօրքը միացած քիւրդ խուժանին, ալլա՜հ, ալլա՜հ գոռալով, երեք ուղղութեամբ սկսաւ անբեկակայելի գնդակների տարափ մը տեղացնելով գրոհ տալ մեր դիրքերի վրայ, ուր ոչ ոք գտնել կը կարծէին։

Թշնամին մօտենում էր անվախ, երբ 27 դարան մտած տըղերքը, երեք մասի բաժանուած, մարտի երգերով և մոսինի կըտրուկ գնդակներով սկսաւ դիմագրաւել, պատնէշել յաջողութեամբ արբեցող, կատաղօրէն գրոհ տուող օսմանեան զօրքին։ Կռիւը վճռական և անօրինակ էր իր տեսակին մէջ, թնդանօթներ չէին կարող այլևս օգնել թիւրք գինուորներին. հերոսների գնդակները 15 վայրկեանի մէջ յաջողած էին ցրիւ տալ թշնամու գունդերը, ըմբոստները անանցմէ՛ լուռ ու հանգիստ ընկած էին հերոսների դիրքերուն առջև արիւնշաղաղ։

Գրոհ տուող գունդերէն երկուքը հեռացած էին, լաւ հասկանալով՝ թէ ո՛վ է իրենց դիմացողը և որչա՜փ կատաղի է իր ինքնամոռացութեան և վրիժառութեան վայրկեանին։

Միայն թէ մի գունդը յառաջանում էր այգիների ծառախիտ մասով, և մեր տղաները մղում էին օրհասական կռիւը, երբ աջ թևի մարտիկները, իրենց գործը վերջացուցած լինելով, արագութեամբ օգնութեան հասան ճիշդ այն ժամանակ, երբ հայկական սպայակոյտի (շտաբի) կարգադրութեամբ, հայոց երաժշտական

*խումբը կռուի վայրը գալով նուագում էր հայկական ռազմի հարազատ հատուածներ: Կռուողները ոգևորուած դիրքերէն դուրս գրոհ տուին Թշնամու վրայ, ցրիւ տուին այդ յամառ գունդն ևս և ռազմի երգերով, աներկիւղ յառաջանալով գրաւեցին Օսմանեան պոստ-հեռագրատունը, խորտակեցին փակուած դռները ու ներս մտնելով, Թշնամու այդ կարևոր դիրքերէն ներս տարան Վանի ապրիլեան հերոսամարտի առաջին յաղթանակը, այնքան հպարտ ու վարժ գիտակցութեամբ:*

*Թշնամին թողեց 10—15 դիակ, զէնքեր, 3 դրօշակ, 700-է աւելի փամփուշտ: Կէս ժամուայ մէջ գրաւած պոստ-հեռագրատան բոլոր գործիքները փոխադրուեցան հայկական սպայակոյտը, վառեցին Թշնամու ամուր դիրքը, քաշուեցան առաջուայ դիրքերը, պատրաստուելու 29 երկար օրերու դիւցազնամարտին, տանելով բռնակալութեան, անիրաւութեան, յետադիմութեան, նիւթականապէս փտած ու բարոյապէս քայքայուած և անիրաւաբար քաղաքակիրթ ազգերու կողքին որպէս ուրոյն ազգ և պաշտօնական կառավարութիւն կազմող Օսմանեան տէրութեան դէմ առաջին սուրբ յաղթանակը:*

*Արեան ծովին մէջ երկար տարիներէ իվեր մահ ապրողների, վրէժի առաջին յաղթանակն էր այդ... Վանի դիւցազնամարտի, ապրիլ 7-ի յաղթանակը...:*

*Էն—Սար*

# Գեղարուեստ

## ԳԵՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

*Նմանութիւն*

—

*Բաբելոնի գետեզրերին նըստել էին նրանք գերի,*
*Յիշում էին իրենց Սիօնն, Երուսաղէմն ու լալիս,*
*Կախել էին տաւիղները վեր՝ ճիւղերին ծառերի,*
*Յիշում էին անցած փառքերն, անցած երգերն ու լալիս:*
*—Առէք տաւիղն, երգէք, տեսնենք երգերը ձեր Սիօնի.*
*Ասում էին գերիչները Իսրայէլի որդերին,*
*Ու՝ սըրբելով նըրանք լացը իրենց տխուր աչքերի՝*
*Տաւիղ առած երգում էին օտար գետի ափերին:*
*—Ով սըրբազան Երուսաղէմ, ըսկիզբն մեր երգերի,*
*Եւ քեզ, Սիօն, մեր սըրբութիւն, թէ մոռանանք մենք երբէք,*
*Թող մոռանայ մեզ մեր աջը, յաւէտ մընանք մենք գերի,*
*Թող չըտեսնենք մենք յաւիտեան ոչ խնդութիւն և ոչ երգ...*
*—Ո՛վ անօրէն դու Բաբելոն, երնէկ բազկին ոխատու,*
*Որ կըզարկի աչքիդ առաջ զաւակներըդ քարերի,*
*Երնէկ օրին, երբ կըզարթնի Իսրայէլի Եհովան*
*Ու կըլըսի հառաչանքը մեր գերեվար քընարի...*
*Էսպէս նըրանք երգում էին իրենց վըրէժն ահարկու,*
*Ու զարմանքով հարցնում էին գերիչները մէկ մէկու.*
*—Մի՞թէ դեռ էլ կենդանի է Իսրայէլը աշխարհում,*
*Մի՞թէ նըրան չըսպանեցինք պատերազմի դաշտերում...*

*Յովհ. Թումանեան:*

# Գրականութիւն

## ՓԻՂ ԵՒ ԱՌԻՒԾ*)

*(Պատմուածքներ)*

II

*Կքուած ծանր ու դառն այդ խոհերի տակ՝ գնում էի ես Թաքսիմի հրապարակի կողքով, դէպի տուն ու չէի նայում, ոչ շուրջս՝ ոչ անցորդներին:*

*Չը գիտեմ որքան ժամանակ այդպէս՝ մինչև որ զգացի թեւս բռնեցին ու կանգնեցրին:*

*Գաւառացի մի ծանօթ ուսուցիչ էր և երկու աքսորական կովկասահայ:*

*Հարցրին թէ ո՞ւր էի գնում այդպէս կքուած և մռայլ:*

*Ու երբ մտածութիւններիս դառնութիւնովը նրանց էլ համակեցի, գէմքերը մթագնեցին և ոչ ոք չը կարողացաւ յուսատու բառ իսկ արտասանել:*

*Սկսեցինք այդ ամենի յանցապարտը որոնել: Մեղադրեցինք գրեթէ ամենքին. կուսակցութիւնների, պատրիարքի, պետութիւնների անտարբերութիւնը, մեր անհամերաշխ գործունէութիւնը և մանաւանդ դանդաղկոտութիւնը:*

*—Փղի պէս դանդաղ,—ահա հայ քաղաքագիտութիւնը, ասաց ռուսահայերից մէկը:*

*—Փղի պէ՞ս:*

*—Այո, աւելացրեց միւսը. ոչ մի զգուշութիւն ու նրբութիւն մեր շարժումների մէջ. երեխայի պէս ուղղամիտ վարմունք՝ դիմացի օձային մտածութիւնների հետ... ճիշտ որ, փղի բնաւորութիւն...*

*Անմիջապէս մտաբերեցի փղի այն պատմութիւնը, որ կարդացել էի «վաղուց ի վեր» օտարազգի մի թերթի մէջ:*

*Ու այլևս չէի լսում խօսակիցներիս, այլ ճգնում էի վերանորոգել յիշողութեանս մէջ թէ փիղը և թէ նրա տխուր արկածը:*

*Երբ պարտէզ մտանք և նստեցինք ծառերի տակ, մէկէն, առանց իսկ մինչև այդ լսած լինելու թէ ինչի մասին էին խօսակցում ընկերներս—դարձայ նրանց և ասացի:*

*—Կուզէ՞ք լսել մահուան պատմութիւնը մի հսկայի, որի միակ մեղքն էր այն, որ չէր կարողացել հաշտուել կապանքների և վանդակների հետ ու կամեցել էր դուրս ելնել, երթալ:*

*Լուռ մնացին: Յետոյ իրար նայեցին ժպտուն:*

*—Եւ ինչու յանկարծ ուզեցիր պատմել այդ հսկայի պատմութիւնը, հարցրեց ուսուցիչը:*

*—Փղի պատմութիւնն է, ասացի միամտօրէն. մահուան պատմութիւնը այն դանդաղ, փոքրիկ աչքերով խոշոր հսկայի, որ առանց որևէ քաղաքականութեան և քաղաքագիտութեան՝ ձըգտեց ազատուելու կապանքներից... զոհ գնաց իր դանդաղկոտութեանը:*

*Ու սկսեցի պատմել:*

—

*... Անուն ունէր այդ փիղը:*

*Վաղուց է որ կարդացի և այժմ չեմ յիշում. կոշտ մի անուն էր: Ինչ-որ մի իտալացու, թէ գերմանացու գերին էր և քաղաքից-քաղաք էր տարւում՝ ցոյցի հանուելու համար:*

*Կերակրում էին. վատ չէր. մէկ-մէկ ծեծում էին, յաճախ կըռնճիթը ծակոտում չարաճճի տղաները և աւելի յաճախ՝ ծիծաղում վրան:*

*Թէև փիղ էր, բայց այդ ամենը վաղուց անտանելի էր դարձել նրա համար. մանաւանդ որ միշտ մի ոտքը շղթայի մէջ առած էին պահում, շուրջը միշտ վանդակներ էր տեսնում և երբէք իրաւունք չէր ունենում որոշուած սահմանից անցնել, գոնէ փոքր ինչ ազատութիւն վայելել:*

*Եւ մի օր էլ վճռեց ելնել ու երթալ. երթալ՝ իր ազատութիւնը վերստանալ և շուրջը ոչ մի կաշկանդումն չը զգալ:*

**) Տես «Համբաւաբեր» № 15:*

Մի շաբաթից ի վեր արդէն նկատում էր, որ կենդանին ուզում էր երթալ։ Ոտքերի շղթան էր ցնցում ուժգնութեամբ, կրնճիթով դէպի օդն էր նետում կոճղ ու քար և առ հասարակ ինչ-որ առջևը գտնուէր։

Գազանապահները, զգուշութեան համար, երեք ոտքերը ծանր շղթաների մէջ առին և երկաթէ ձողեր միշտ շիկացրած՝ պատրաստ պահեցին։

Բայց փիղը, բաւական երկար վարանումներից յետոյ՝ մի օր էլ բուռն շարժումներով հետզհետէ ջարդոտեց շղթաները և առաւ—քայլեց։

Պէտք էր տեսնել գազանապահների և գազանանոցի իրարանցումը առ հասարակ։

Գգուանքի խօսքեր, յորդոր, սպառնալից հրաման, ներս նետուող համեղ կերակուր, ապա և պարզուող շիկացրած ձողերը ոչ մի օգուտ չը տուին։

Փիղը որոշել էր գնալ և գնում էր։

Պահ մի ես և վերջին շղթաները գետին ընկնելուց յետոյ՝ սկսեցին վանդակի ձողերն էլ գալարուել ու նետուել դէպի օդը։

Սոսկալի է, երբ փիղը որոշում է գնալ, ազատուել իր գերութիւնից։ Միայն մահը կարող է դիմադրել. ուրիշ ոչինչ։

Վանդակից յետոյ սակայն դեռ գազանանոցի տախտակորմը կար, ապա և լայն ու խորունկ մի փոս, որից ցատկել, մանաւանդ ծանրաշարժ փղի համար՝ անհնար էր։

Բայց գազանը վճռել էր գնալ։ Նախ տախտակորմը փշրտեց, ապա սկսեց ջարդոտել ու դէպի փոսը տանել՝ ինչ որ գտաւ. տախտակ, ցից, ծառ, քար...

Պէտք էր և այն տեսնել, թէ ինչ դրութեան մէջ էր այդ միջոցին ամբողջ գազանանոցը։ Ազատութեան տենդը այնպէս համակում էր բոլոր գերի գազաններին, որ ամեն կողմից լսւում էին վանդակների սպառնալից ցնցումներ, մռնչիւն, ոռնոց և ճիչ։ Շէնքը ամբողջ դղրդում էր. գազանները ոստոստում էին ձողերն ի վեր, թռչունները ճչում էին, կատաղի թռիչքներով բաղխում վանդակների երկաթին...

Ապա առիւծներն ու վագրերը, ապա ինձերն ու կապիկները...

Ինչպիսի ժխո՛ր, ինչպիսի դժոխային իրարանցում!...

Այդ ամենի վրայ աւելանում էր փղի ջարդած սիւների, տախտակորմի շառաչը, տեղահան եղնող ցիցերի ու ծառերի փշրտոցը։

Եւ այդ ամենը փիղը իրար ետևից փշրտելով՝ լցնում էր փոսի մէջ, որպէսզի անցք լինի իր համար և ելնէ երթայ։

Տասը-տասնեհինգ րոպէից յետոյ կամուրջը պատրաստ էր և փիղը դադարեց փշրտելուց։ Այլևս ոչինչ չը դիպաւ։ Պահ մի կանգ առաւ շունչ առնելու, յետոյ մօտ գնաց իր կառուցած կամուրջին, ոտքը զգուշութեամբ վրան կոխեց և ուզեց փորձել նրա ամրութիւնն ու դիմացկունութիւնը իր ծանր մարմնի համար։

Գազանանոցի մէջ իսկոյն տիրեց խորունկ լռութիւն։ Վանդակների ձողերի ետևից, կարծես շունչերնին բռնած ու արձանացած՝ բոցավառ աչքեր ակնապիշ դիտում էին այժմ ազատութեան վսեմ այն վայրկեանը, երբ բազմամեայ գերին կամ պիտի խուսափէր ընդ միշտ շրջափակից և կամ պիտի ոչնչանար...

—

Մինչ այդ՝ քաղաքի իշխանութիւնն ամբողջ, իրար անցած ու շփոթուած, եկել հաւաքուել էին գազանանոցի դէմը գտնուող հրապարակի վրայ և դեռ չը գիտէին թէ ինչ պէտք է անել։

Որ փղի խուսափումը մեծ վտանգ էր սպառնում քաղաքացիներին—դրա մէջ կասկած լինել չէր կարող։ Հսկայ ու «կատաղած» գազան, առանց կապանքի, երկար ժամանակ տանջանքների մէջ դառնացած ու զայրոյթով լի...

Կազմուեց իսկոյն պատերազմական խորհուրդ, որին մասնակցելու հրաւիրուեցին... անասնաբոյժներ եւս։

Երկար չը տևեց խորհուրդը։ Ինչ հարկ նրբութիւնների։ Կարճ և ազդու—գնդակահարել ու ոչնչացնել յանդուգն ապստամբին։

Վճիռը հեռագրով հաղորդուեց նահանգապետին, սա՝ մայրաքաղաք և քիչ յետոյ վաւերացրած՝ պատրաստ էր։

—Գնդակահարել!

Չէր անցել մի ժամ և ահա գազանանոցին դէմ առ դէմ եկաւ շարուելու մի ամբողջ զօրագունդ։ Սուինների տրցակներ, թմբկահար, դրօշակ, շեփոր, հեծեալ սպաներ և հրամանատար...

Ու կանգ էր առել քաղաքի մէջ ամեն կեանք և շարժում. հանդիսատես լինելու էին եկել ամենքը։

Պատերազմական խորհրդի անդամները այդ միջոցին սուրհանդակ հանեցին դէպի զանազան կողմեր և հրաւիրեցին «ազատ նշանաձիգների» ու որսորդների, որ գան միանան փիղ սպանելու գործին...

Գալիս էին խումբ առ խումբ, հապճեպով, զինուած. լուսանկարիչներ էլ երևացին։ Ինչ որ գերմանացիներ, որոնք սիրում էին այդպիսի տեսարաններ լուսանկարելը։

Ամեն ինչ ուրեմն պատրաստ, որոշուեց, գործի սկսելուց առաջ, ապստամբին գնել այնպիսի մի յարմար դիրքի մէջ, որ գնդակները չը վրիպէին։

Կանչուեց գազանապահը, որ խոշոր հացի մի կտոր ձեռքին՝ գնաց դէպի կամուրջը և արդէն նրա վրայ ելած ու գնալու պատրաստուած փղի առջև նետեց։

Փիղը դարձաւ և նրա ակնարկը հանդիպեց դիմացը շարուած պահակներին, որոնք հրացաններին պարզած՝ կրակելու հրամանին էին սպասում։

Ծանր, ճնշիչ մի վայրկեան եղաւ այդ։ Լուռ ու անշարժ էր ամեն ինչ և ամեն ոք։

Հասկացաւ փիղը որ կորսուած էր։ Ու մահասարսուռ մի թախիծ հայեացքի մէջ՝ արձանացած մնաց ազատութեան ճանապարհի վրայ։

Բայց մի վայրկեան միայն տևեց այդ։ Յուսահատ մի կատաղութիւն համակեց անձը և նա խելակորոյս, գրեթէ մոլեգնաբար կորզեց մի ահագին գերան, գլխից վեր բարձրացնելով ցնցեց օդի մէջ ու մի րոպէ մնաց այդպէս։

Յետոյ, զգալո՜վ կարծես որ անօգուտ էր այդ ամենը, խղճուկ կերպով կնճիթը իջեցրեց ու պոչը ողորմագին շարժել սկսեց։

Այդ միջոցին էր, որ խորունկ լռութեան մէջ հնչեց կտրուկ ու չոր մի ձայն.

—Ուշադիր հրամանին!...

Պահակները մի ծունկի վրայ իջան. հրացանի շնիկները միահամուռ շառաչեցին։

Փիղը հասկացաւ, ցնցուեց, շարժուեց՝ կարծես ետ դառնալու համար, բայց երերաց ոտքի վրայ ու մնաց իր տեղում։

Նոր մի հրաման... ու զռնչաց առաջին համազարկը։

Փիղը, գնդակները կողի մէջ առնելով, մի մեծ ցնցում գործեց։ Ուզեց նետուել դէպի դուրս, բայց սայթաքեց և փոսի մէջ ընկաւ։ Սակայն ոտքի վրայ մնաց. քայլեց դէպի առաջ և կատաղօրէն, ժանիքներովը սկսեց հող նետել դէպի վեր...

—Կրա՛կ, միմեանց ետևից...

Ու պահակ, որսորդ՝ այլևս իրար խառնուեցին։ Գնդակի տարափը խառն ի խուռն՝ սկսեց տեղալ թշուառ հսկայի վրայ։

Փղի մի աչքը արդէն պայթել էր։ Կուրացած գրեթէ, կողերն ի վար հոսող արիւնի լայն առուակներով երիզաւորուած՝ կանգնել էր նա այժմ մի տեղի վրայ և կնճիթը այս ու այն կողմ պարզելով՝ թշնամիներն էր որոնում շուրջը։

Համազարկերը յաջորդում էին իրար անխնայօրէն։ Ամեն անգամ կենդանին ցնցւում էր, տանջալից ու աղեխարշ մռնչիւններով օդը թնդացնում—բայց դեռ չէր ընկնում։ Ոտների տակ գոյացող արիւնի լճակի մէջ կանգնած՝ ծանրօրէն երերում էր ու թշուառ կերպով ցնցւում։

Կնճիթը այլևս թուլացել էր ու իջել։ Երեսը բոլորովին արիւնի մէջ էր, հոսանուտ արիւնով ողողուած...

Վերջապէս պահակներից մէկի գնդակը ծակած լինելով սիրտը՝ վերջ տուաւ այդ արիւնալի տեսարանին։

Մահասարսուռ մի հառաչով փիղը ծնկան վրայ եկաւ, գլուխը ուժգնութեամբ խոնարհելով կպցրեց գետնին. յետոյ մի անգամ եւս երերաց ծանրօրէն... ու մէջքի վրայ փռուեց փոսի մէջ։

Վերջացել էր։

Սպանողները հրացաններին վար առին, քրտինքներին սրբեցին եւ գոհունակ ժպիտով իրար նայեցին։ Խօսող չեղաւ։ Կամացուկ ետ քաշուեցին։

Իշխանութիւնն էր միայն, որ դիակը դիտելու եկաւ եւ ապահովուեց թէ ապստամբը վերջնականօրէն ընկել էր...

Այդպէս մեռաւ այն հսկան, որ կամեցել էր ազատութիւն ձեռք բերել... եւ յաղթուել էր՝ շնորհիւ իր վարանողութեան, ծանրաշարժութեան եւ դանդաղութեան։

Նրա կմախքը չը գիտեմ որ թանգարանումն է գտնւում այժմ, բայց մտածում եմ որ կուրծքին տախտակ պիտի ունենայ կախուած եւ վրան այսպէս գրուած.—

«Այն փիղը, որ չուզեց ստրկութեան մէջ ապրել»։

Գիտէք աւելի յարմար տապանագիր։ Ասացէք։

—

Երբ վերջացրի, գաւառացի ուսուցիչը ոստնեց տեղիցը, զայրացողի դէմքով կանգնեց դէմս եւ ասաց.

—Դու այդ պատմութիւնը կարդացե՞լ ես մի տեղ, թէ՞ ինքդ ես հնարել։

—Կարդացել եմ։

—Եւ ճիշտ այնպէս, ինչպէս պատմեցի՞ր։

—Ո՛չ անշուշտ։ Այնքանը, որքան մտաբերել կարողացայ... Կարծեմ մի քիչ միայն յարդարեցի, յապաւումներ արի, այլեւ յարմարեցրի իմ մտածութիւններին։

—Զգո՞ւմ էի այդ, ասաց նա։ Յետոյ ուժգնութեամբ աւելացրեց.

—Այդպէ՞ս ուրեմն. դու գտնում ես որ ազատութեան համար մեր գործադրած ջանքերը փղային են եղել եւ որ այդ փղի պէս էլ վերջ կունենանք... թանգարաններո՞ւմ...

—Պատմակա՛ն թանգարաններում... կցեց խուլ ձայնով կովկասահայերից մէկը։

—Լաւ ուրեմն, շարունակեց ուսուցիչը. եկէք անցնենք միւս կողմը եւ ես մի ուրիշ գրոյց պատմեցնեմ ձեզ այդ ուղղութեամբ։ Մի գրո՛յց, ուր պիտի տեսնէք, որ եթէ մեռնե՛լ կայ ազատութեան համար—գիտենք մենք մեռնել ո՛չ թէ փղի, այլ առիւծի պէս...

Այո՛, առիւծի... Եկէք!...

Վ. Փափազեան

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի — Типографія „Прогрессъ“, Лорисъ-Меликовск. 1 — Дозволено военной цензурой

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 16

# „ՀԱՄԲԱՌԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

«Եղբայր. Օգնութ.». Երեւանի III որբանոցի

15 փետր. 1916 թ.

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա-վայր | Տարիքը | Ծնողք մեռե՞լ է կամ չէ | Ծնողների տեղը | Գրագէտ է | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Խաչատուր | Վան | 12 | հայր | Երեւան | այո | |
| 2 | Արաղ-Եփոդեան Գառնիկ | » | 12 | որբ | | » | |
| 3 | Ասեղցեան Լեւոն | » | 13 | խորթ-մ. | Երեւան | » | |
| 4 | » Յովհաննէս | » | 9 | » | » | » | |
| 5 | Ապաճեան Միհրան | Բիթլիս | 13 | » | Ամերիկա | » | |
| 6 | Աստուածատրեան Յակոբ | Գործոթ | 9 | որբ | | ոչ | |
| 7 | » Պետրոս | Սղկա | 10 | հայր | Բաքու | այո | |
| 8 | Աթէշ-Կաշեան Վահրամ | Վան | 12 | որբ | | » | |
| 9 | Ալանեան Տիգրան | » | 10 | մայր | Բաքու | ոչ | |
| 10 | Աճեմ-Խաչօեան Օնիկ | » | 13 | որբ | | այո | |
| 11 | Բաղդասարեան Կարապետ | Շատախ-Թաղ | 13 | հայր | Երեւան | » | |
| 12 | Գոչոյեան Եղիշէ | Վան | 10 | » | Ամերիկա | » | |
| 13 | Խիզարճեան Մնացական | » | 14 | որբ | | » | |
| 14 | Խամուրչեան Մանուկ | Արճէշ | 12 | » | | » | |
| 15 | Խուրշիտեան Մարտիրոս | Գիւմրի | 12 | » | | » | |
| 16 | Կարապետեան Մանուկ | Շատախ | 15 | » | | ոչ | |
| 17 | Մարգարեան Մելքոն | Ոզմ | 14 | » | | այո | |
| 18 | Մանուկեան Մանուկ | Վան | 12 | հայր | | » | |
| 19 | Միրիջանեան Հայրիկ | » | 12 | որբ | | » | |
| 20 | Մխիթարեան Սահակ | Կարկառ-Թաղ. | 14 | » | | » | |
| 21 | Մկրտչեան Գրիգոր | Վան | 9 | » | | » | |
| 22 | » Շահէն | Շատախ | 10 | հայր | Բաքու | » | |
| 23 | Մուրադեան Նազարէթ | Մարմէտ | 14 | որբ | | » | |
| 24 | Մուրիկեան Սարգիս | Գաւաշ-պետ. | 14 | » | | ոչ | |
| 25 | Յակոբեան Վարդան | Վան | 9 | մայր | Երեւան | » | |
| 26 | Յարութիւնեան Հայրիկ | Նոր-գիւղ | 11 | որբ | | ոչ | |
| 27 | Յովհաննիսեան Երուանդ | Վան | 12 | մայր | Երեւան | այո | |
| 28 | » Միհրան | » | 10 | մայր | | այո | |
| 29 | Ներսէսեան Արշակ | Մաճարս | 13 | որբ | | » | |
| 30 | Շաղօեան Կակաչ | Խարականց | 12 | մայր | Թիֆլիս | » | |
| 31 | Շարանպէյեան Վարդան | Վան | 10 | » | Երեւան | » | |
| 32 | Պապանեան Խաչատուր | Շահպաղի | 10 | » | Վան | » | |
| 33 | Պարտիզպանեան Միքայէլ | Վան | 12 | որբ | | » | |
| 34 | Պետրոսեան Անդրանիկ | Կարաքիլիսէ | 8 | մայր | Երեւան | ոչ | |
| 35 | » Ժոզէֆ | Վան | 10 | հայր | Բաքու | այո | |
| 36 | Պերպերեան Յարութիւն | Ծուրատան | 12 | » | Բուլգարիա | » | |
| 37 | » Սիրաք | » | 9 | որբ | | » | |
| 38 | Պլուզեան Աղասի | » | 11 | » | | ոչ | |
| 39 | Պտուտեան Արամ | » | 13 | » | | այո | |
| 40 | Սարգսեան Յովհաննէս | | 9 | » | | ոչ | |
| 41 | » Սերոբ | Մաշտակ | 11 | » | | » | |
| 42 | Սեդրակեան Աղասի | Վան | 12 | » | | այո | |
| 43 | Ստեփանեան Երուանդ | Ոզմ | 12 | մայր | | » | |
| 44 | » Նիկոլ | » | 9 | » | | » | |
| 45 | Վարդանեան Առաքել | Իրիշտար | 16 | որբ | | » | |
| 46 | Վարդապետեան Կարապետ | Վան | 13 | » | | » | |
| 47 | Տէր-Յովհաննիսեան Համազասպ | » | 14 | » | | » | |
| 48 | » Հայկակ | » | 14 | խորթ.մ. | Երեւան | ոչ | |
| 49 | Փանոսեան Կարապետ | Շահպաղի | 13 | որբ | | այո | |
| 50 | Փախչանեան Յովհաննէս | Վան | 11 | » | | » | |
| 51 | Ֆերոյեան Եղիշէ | Ծաղիկգիւղ | 10 | » | | » | |

# Անուանացուցակ փախստական որբ երեխաների

«Եղբայրակ. օգն.» Երեւանի IV որբանոցի

15 փետր. 1916

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Էլիզա | Շատախ | 6 | որբ | | ոչ | |
| 2 | Աբրահամեան Վարդգէս | Կուռուբաշ | 12 | » | | այո | |
| 3 | Գէորգեան Շուշանիկ | Վան | 11 | » | | " | |
| 4 | Դարբինեան Գեղանոյշ | » | 9 | մայր | Երեւան | " | |
| 5 | » Սիրանոյշ | » | 12 | » | » | " | |
| 6 | Իւզբաշեան Յովհաննէս | Նորբայազէտ | 13 | հայր | | " | |
| 7 | Խաչատրեան Արաքսի | Բաղէշ | 11 | որբ | | " | |
| 8 | Մանուկեան Նուարդ | Շատակ | 13 | մայր | Երեւան | " | |
| 9 | » Խլինկիա | » | 10 | ունի | » | " | |
| 10 | » Գուրգէն | Վան | 12 | որբ | | " | |
| 11 | Մալխասեան Եղիսաբեթ | Շատախ | 8 | » | | " | |
| 12 | Մարգարեան Արաքսի | Աւանց | 5 | հայր | Երեւան | ոչ | |
| 13 | Մարտիրոսեան Պօղոս | Մոկս | 8 | որբ | | այո | |
| 14 | Մկրտչեան Մարինէ | Վան | 13 | » | | " | |
| 15 | » Մարիամ | » | 10 | մայր | Երեւան | " | |
| 16 | » Գոհարիկ | » | 9 | որբ | | " | |
| 17 | » Ռստոմանէ | Շատախ | 9 | » | | " | |
| 18 | » Տիգրիս | » | 5 | » | | " | |
| 19 | Միսակեան Սրբուհի | Վան | 14 | » | | " | |
| 20 | Միհրանեան Սիրարփի | » | 13 | մայր | Երեւան | " | |
| 21 | » Հայկանոյշ | » | 9 | » | » | " | |
| 22 | Մովսէսեան Արփենիկ | » | 8 | » | » | " | |
| 23 | » Անդրանիկ | » | 7 | » | » | ոչ | |
| 24 | Յակոբեան Մանուէլ | » | 6 | որբ | | այո | |
| 25 | » Վահրամ | » | 15 | » | | " | |
| 26 | Յովհաննիսեան Սիրվարդ | » | 12 | մայր | Երեւան | " | |
| 27 | Յովսէփեան Գէորգ | Ուրանց | 10 | որբ | | " | |
| 28 | Յովակիմեան Վարսենիկ | Երեւանի Նահ. | 10 | որբ | | այո | |
| 29 | Ներսէսեան Վասիլուհի | Շատախ | 4 | մայր | Երեւան | ոչ | |
| 30 | » Եղիսաբեթ | » | 7 | » | » | այո | |
| 31 | Նշանեան Վերժինէ | Վան | 13 | » | » | " | |
| 32 | » Արփի | » | 12 | » | » | " | |
| 33 | » Արամ | » | 10 | » | » | " | |
| 34 | » Ալբերտ | » | 5 | » | » | ոչ | |
| 35 | Շատախեան Գուրգէն | » | 3 | » | » | " | |
| 36 | Սիմոնեան Գայիանէ | » | 13 | հայր | » | այո | |
| 37 | » Վարդան | » | 6 | » | » | " | |
| 38 | Վահանեան Հայկանոյշ | » | 9 | որբ | | ոչ | |
| 39 | Վարդանեան Աղասի | Բելու | 7 | » | | " | |
| 40 | Սաթենիկ | | 4 | » | | " | Մօր անունը Ֆնտօ |

## Անուանացուցակ փախստական որբ երեխաների

«Եղբայրակ. Օգն.» Երևանի V որբանոցի

15 փետր. 1916

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աբրահամեան Լիա | Վան | 16 | որբ | | այո |
| 2 | Աւագեան Աբգար | » | 13 | մայր | | » |
| 3 | Աւետիսեան Հայկանոյշ | Խարակոնիս | 19 | որբ | | » |
| 4 | Արամեան Հմայեակ | Ղարաքիլիսէ | 3 | մայր | Երևան | ոչ |
| 5 | » Ազաւնի | » | 5 | » | » | » |
| 6 | Արսէնեան Յովհաննէս | Վան | 12 | որբ | | » |
| 7 | Բարսեղեան Անուշ | » | 8 | մայր | Նորք գ. | այո |
| 8 | » Սիրուն | » | 5 | » | Նորք գ. | ոչ |
| 9 | » Մխիթար | Նոր գիւղ | 14 | » | Երևան | ոչ |
| 10 | » Պարթև | Վան | 11 | » | » | այո |
| 11 | Գաբրիէլեան Մայիս | » | 10 | որբ | | ոչ |
| 12 | » Եսթէր | Բերդ | 14 | » | | այո |
| 13 | Գէորգեան Լուսնթագ | Խորգոմ | 13 | մայր | Էջմիածին | » |
| 14 | » Սիրուն | Վան | 12 | որբ | | » |
| 15 | » Ազնիւ | Այնթապ | 9 | » | | ոչ |
| 16 | » Ղուկաս | » | 11 | » | | » |
| 17 | Գրիգորեան Ասքանազ | Աւանց | 5 | ունի | Երևան | » |
| 18 | Գրիգորեան Գրիգոր | Վան | 14 | » | | այո |
| 19 | » Քրիստինէ | Խորգոմ | 12 | » | | » |
| 20 | » Գարեգին | Վան | 5 | » | | ոչ |
| 21 | Դերձակեան Հենրիկ | » | 8 | » | | այո |
| 22 | » Գառնիկ | » | 9 | » | | » |
| 23 | Եաղկուպեան Հայկանոյշ | » | 9 | հայր | Վան | » |
| 24 | » Գեղամ | » | 6 | » | » | ոչ |
| 25 | Զաքարեան Սրբուհի | Բագոնց | 8 | որբ | | » |
| 26 | » Նանուխաս | » | 11 | » | | » |
| 27 | » Նուպար | » | 15 | » | | » |
| 28 | » Կիւլվարդ | Կարմունջ | 12 | » | | » |
| 29 | Խաչատրեան Շամամ | Բերկրի | 9 | որբ | | ոչ |
| 30 | Խլոյեան Միհրան | Անգալ | 14 | » | | » |
| 31 | Խիզարճեան Սիրուն | Վան | 10 | » | | այո |
| 32 | » Հայրիկ | » | 9 | » | | ոչ |
| 33 | Կանտոյեան Գրիգոր | » | 11 | » | | այո |
| 34 | » Յովհաննէս | » | 13 | » | | » |
| 35 | Կարսեան Սուրէն | » | 12 | » | | » |
| 36 | Կարապետեան Հմայեակ | Շատախ | 13 | » | | » |
| 37 | Հրաչեան Երուանդ | Վան | 14 | » | | » |
| 38 | Ղարիբեան Իսրայէլ | Մանկասար | 8 | » | | |
| 39 | » Լէոն | » | 12 | » | | |
| 40 | Ծողաղայեան Սիրանոյշ | Վան | 10 | ունի | Երևան | այո |
| 41 | » Վարսենիկ | » | 9 | » | » | ոչ |
| 42 | Մարտիրոսեան Արմենուհի | Տհեր | 10 | որբ | | այո |
| 43 | » Քրիստինէ | » | 13 | » | | » |
| 44 | Մանուկեան Սիրուն | Աղանանց | 10 | » | | » |
| 45 | Մկուճեան Երուանդ | Մոլսալեման | 4 | » | | ոչ |
| 46 | Մելքոնեան Արաքսի | Հայոց Ձոր | 8 | ունի | Էջմիածին | այո |
| 47 | » Ներսէս | Վան | 12 | մայր | Երևան | » |
| 48 | » Մանուէլ | » | 13 | » | » | » |
| 49 | Մինասեան Արմաւիր | » | 8 | որբ | | » |
| 50 | » Յովհաննէս | Տշող | 9 | » | | » |
| 51 | » Աւետիս | Վան | 9 | » | | |
| 52 | Միրզաբեան Փայծառ | Թիմար | 15 | » | | ոչ |
| 63 | Մկրտչեան Վարդուհի | Կենթանանց | 3 | որբ | | » |
| 54 | » Իսկուհի | » | 10 | » | | » |
| 55 | » Սարգիս | Խէկ | 6 | » | | » |
| 56 | Սկօչաուչեան Տաճատ | Արճէշ | 8 | մայր | Երևան | » |
| 57 | » Մկրտիչ | » | 12 | » | » | այո |
| 58 | Մինասեան Ատոմ | Վան | 12 | որբ | | » |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 59 | Մկրտչեան Վարդանոյշ | Մօլէօլէման | 8 | որբ | | ոչ |
| 60 | Մուրադեան Աստղիկ | Տհեր | 5 | » | | » |
| 61 | Յակոբեան Հրանոյշ | Վան | 11 | » | | այո |
| 62 | » Մաքրուհի | » | 21 | » | | » |
| 63 | » Փարօ | Ծղակ | 13 | » | | ոչ |
| 64 | Յարութիւնեան Գրիգոր | Վան | 12 | » | | այո |
| 65 | Յովհաննիսեան Արտաշէս | » | 13 | » | | » |
| 66 | » Արմենակ | » | 13 | ունի | Երևան | » |
| 67 | » Միհրան | Մոքս | 14 | որբ | | » |
| 68 | Նշանեան Եւգինէ | Աթաման | 9 | » | | ոչ |
| 69 | Շաղոյեան Գասպար | Խարականց | 12 | ունի | Էջմիածին | այո |
| 70 | Շալճեան Գառնիկ | Շահպաղի | 13 | մայր | Երևան | » |
| 71 | » Սիրուն | Խարականց | 11 | հայր | Էջմիածին | ոչ |
| 72 | Պաղօեան Սիմօն | Նոր-գիւղ | 13 | ունի | Երևան | » |
| 73 | Պետելեան Գառնիկ | Արճէշ | 9 | որբ | | » |
| 74 | » Անդրանիկ | » | 10 | » | | » |
| 75 | » Հայրիկ | » | 5 | » | | » |
| 76 | Պետրոսեան Հայկանոյշ | Աւերակ | 7 | » | | » |
| 77 | Սարգսեան Արամ | Նոր-գիւղ | 9 | հայր | Ղամարլու | այո |
| 78 | » Յակոբ | Մգրա | 13 | որբ | | |
| 79 | Վարդապետեան Շուշանիկ | Վան | 12 | » | | » |
| 80 | Վարդանեան Ասքանազ | Ամաթ | 9 | մայր | Աշտարակ | ոչ |
| 81 | Վարդապետեան Կատարինէ | Վան | 10 | որբ | | » |
| 82 | Վարդապետեան Խաչատուր | » | 5 | » | | » |
| 83 | Տէր-Մանուէլեան Երուանդ | » | 12 | հայր | Երևան | այո |
| 84 | » Մանուէլ | » | 14 | մայր | » | » |
| 85 | Տարմոյեան Պարգև | Կղզի | 13 | որբ | | » |
| 86 | Տիգրանեան Սիրվարդ | Մգրա | 3 | » | | » |
| 87 | Փախանեան Գուրգէն | Վան | 11 | » | | » |
| 88 | Քամալեան Երուանդ | Սեղձան | 12 | հայր | Երևան | ոչ |
| 89 | Ժնևիէվ | | 3 | | | » |